ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# ՀԱՅՐԵՆԻՔԻՍ

Ծողերի մեջ մանուկ օրվա
Քո անունն եմ մղում առաջ.
Թևերդ բաց, շնչիր, լողա,
Վայելիր լույսը կենսառատ:

Ապրիր այսօր, վաղը, հավերժ,
Ապրիր անվերջ նորոգվելով՝
Գոյության բյուր ձևերի մեջ,
Գոյության պես մշտահոլով:

Թող ոչ մի ջանք սին չթվա,
Ջուր չթվա և ոչ մի ճիգ,
Ամեն փխրուն ծիլիդ վրա
Ծռայիր սեր, միտք ու ոգի:

Զորակոչիր որդիներիդ՝
Անհատներիդ, սերունդներիդ,
Փրկիր նրանց փուչ հոգսերի,
Սին հույսերի ճիրաններից:

Ու տուր նրանց փափագն անեղծ
Լինել արդար մշակը քո՝
Հանուն սիրո ամենամեծ
Ծնված արյուն-տառապանքով:

Ու պատգամիր՝ չմոռանան,
Նույնիսկ վերջին, վերջին շնչում,
Որ այս կյանքում մնում է այն,
Ինչ քո անվանն է առնչվում:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

№ 11 ● 1983

Լույս է տեսնում 1928 թվականից

ՅՈՒ. ՍԱՀԱԿՅԱՆ—
Հայրենիքիս . . . . 1
ՊԻՈՆԵՐ—60
60-ամյա պատանին . . . 2
Վ. ԴԱՎԹՅԱՆ—
Դաշտի կարոտ . . . . . 6
ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ
«Ինքնուրույնության տեղ՝ ինքնագլխություն» . . . . 7
Ն. ՍԱՐԳՍՅԱՆ—
«Ով կարող է, թող գա մրցի մեզ հետ» . . 8
Գ. ՄԿՐՏՉՅԱՆ—
«Ով աշխատի՝ նա կուտի» . . . . . 8
Գ. ԹՈՎՄԱՍ—
Տղան ու ամպը
Տզզանը . . . . . 9
Ա. ԱԲԱՋՅԱՆ—
Ալվարդիկի ակադեմիաները 10
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ . . . 13
Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ—
Էջեր հայրենի բնության պատմությունից . 14
Էդ. ՍԱՐԳՍՅԱՆ—
Որսորդները հայտնեցին . . 16
Զ. ԽԱԼԱՖՅԱՆ—
Նշանավոր ասպետն ու իր հետնորդները . . . 18
Վ. ԲԱԲԱՅԱՆ—
Եղբայրները . . . . 23
Մ. ԱՍԼԱՄԱԶՅԱՆ—
Երախտապարտ եմ իմ ճակատագրին . . . . 25
Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ—
Անի . . . . . . 26
Լ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ—
Վերելք . . . . . . 30
ՄԵՐ ՓՈՍՏԻՑ . . . . . 30
Էդ. ՄԻԼԻՏՈՆՅԱՆ—
Հայաստան . . . . . . 31
Հր. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ—
Համբո-Գիքորի ժամանակները չեն
Թան, թան, թանանա . . 32
ԺԱՄԱՆՑ

Շապիկի առաջին էջը՝
ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ


















«Խորհրդային Հայաստան» թերթի 1923 թվի տարեսկզբի համարներից մեկում հրապարակված է մի ընդարձակ հաղորդագրություն այն մասին, որ այդ տարվա մարտ ամսից լույս է տեսնելու մանկապատանեկան գրական-գեղարվեստական պատկերազարդ ամսագիր՝ «Պատկոմ» անունով: Սովետական Հայաստանն ինքը դեռ մի մանուկ, երեք տարին դեռ չբոլորած, երկիրն արյունլվիկ, անօթեվան գաղթականներով ու անապաստան որբերով լի, Երևանի փողոցներում դեռ կարելի էր հանդիպել միածի մի սև կառքի, որը սովի և համաճարակների զոհերին էր հավաքում՝ հողին պահ տալու համար... Այսպիսի իրավիճակ, և մարդիկ մտածում են ստեղծել մանկապատանեկան գրական-գեղարվեստական պատկերազարդ ամսագիր: Եվ թե որքան էին նրանք կարևորություն տվել դրան, վկայում է նաև խմբագրական կոլեգիայի պատկառելի կազմը՝ Եղիշե Չարենց, Ստեփան Զորյան, կենսաբանության պրոֆեսոր Ավետիք Տեր-Պողոսյան՝ մեկը Անառյանի, Աբեղյանի, Մանանդյանի սերնդակից այն մեծերից, որոնք Սովետական Հայաստանի կառավարության առաջին իսկ կոչով, թողին օտար այն համալսարանները, ուր դասավանդում էին, եկան, հավաքվեցին Երևանում և հիմնադրեցին մեր պետական համալսարանը:

Սովետահայ մանուկներն ու պատանիները 1923 թվի մայիսին ձեռքերն առան իրենց գրական-գեղարվեստական պատկերազարդ ամսագրի առաջին համարը:

Անցյալում մենք ունեցել ենք մանկական պատկերազարդ շատ ամսագրեր, ինչպես, օրինակ «Հասկերը», որի մեջ տպագրվել են Հովհ. Թումանյանի, Ավ. Իսահակյանի և անցյալի մեր խոշոր մանկագիրների՝ Խնկո Ապոր, Հակոբ Աղաբաբի, Հայրապետ Հայրապետյանի ըստեղծագործությունները: «Պատկոմը» ժա-

ռանգեց այն ամեն լավը, որ ձեռք էր բերել «Հասկերը», բայց և տարբերվեց նրանից մի կարևոր առանձնահատկությամբ. մոտիկ էր կանգնած կյանքին: «Պատկոմի» էջերում հայելու պես արտացոլված է իր ժամանակի կյանքը: Նրա առաջին համարում մենք կարդում ենք մի սրտաճմլիկ կոչ՝ ուղղված պատկոմներին, դպրոցականներին և նրանց ծնողներին, ուր ասված է, թե հայտարարված է անապաստան երեխաներին օգնելու շաբաթ, նկարագրվում է, թե ինչպես տասնյակ հազար որբացած երեխաներ, մերկ ու քաղցած թափառում են փողոցներում, գոյություն ունեցող մանկատները ի վիճակի չեն նրանց բոլորին պատսպարել, իսկ հանցագործ տարրերը օգտվում են այդ երեխաների դժբախտ վիճակից, գցում են իրենց ազդեցության տակ, ծառայեցնում իրենց հանցագործ նպատակներին: Ամսագիրը կոչ էր անում օգնության ձեռք մեկնել այդ դժբախտ երեխաներին, պատսպարել իրենց տներում, իրենց մի կտոր հացը կիսել նրանց հետ:

Երկրում գոյություն ունեցող ծանր կացության պատկերի հետ, ամսագրի էջերում իր վառ արտահայտությունն է գտել հոգեկան այն վերելքը, որ ապրում էր միահամուռ հայ ժողովուրդը՝ Սովետական Միության եղբայրական ընտանիքում: Երկրի վերականգնման աշխատանքներին իրենց մասնակցությունն են բերում պատկոմներն ու դպրոցականները: Գյուղական վայրերում նրանք մասնակցում են ճանապարհների, ոռոգման առուների վերականգնման ու կառուցման աշխատանքներին, դպրոցամերձ այգիներ են ստեղծում, օգնում են չքավոր և անաշխատունակ գյուղացիների վար ու ցանքին, մի երևույթ, որ հետագայում թիմուրական շարժում անունն ստացավ և կապվեց Արկադի Գայդարի «Թիմուրը և իր ջոկատը» վիպակի հետ, մինչդեռ թիմուրական շարժումը մեր «Պատկոմի» վկայությամբ, ըսկիզբ է առել սովետական կարգերի ամենավաղ շրջանում, պատկոմական կազմակերպության հետ:

Աշխատավորների պետությունը իր պետական գերբի վրա դրոշմել էր մուրճ ու մանգաղ, աշխատանքը հռչակվել էր դավանանք, աշխատանքը դարձել էր պաշտամունք, աշխատանքային էր կոչվել դպրոցը, դաստիարակության հիմքն աշխատանքն էր, երկրի ողջ կյանքը խարսխվել էր այդ հիմքի վրա:

Աշխատանք. բայց ոչ [illegible]րն ու հետամնաց միջոցներով, այլ առաջավոր գիտությամբ ու տեխնիկայով զինված, կորչեն հինն ու հետամնացը աշխատանքի մեջ և կենցաղում, կորչեն հետամնաց բարքերը, պայքար անգրագիտության դեմ, երեսներս դեպի գյուղ...

Ավագների օրինակով, պատկոմներն ու դպրոցականները քաղաքներից գյուղերն են մեկնում զեկուցումներ կարդալու, մարզահանդեսներ և ներկայացումներ տալու. լեռնային քարքարոտ արահետներով ու դաշտամիջյան փոշոտ ճամփաներով, գլխներից վեր ծածանելով պատկոմական դրոշակը և փող ու թմբուկ հնչեցնելով, քաղաքներից դեպի գյուղերն են ձգվում կարմիր վզկապավորների շարքերը:

Այս ամենի մասին մենք իմանում ենք ամսագրի էջերից, կարդում նաև դպրոցամերձ հողամասի ագրոկանոններով մշակելու և ընտանի կենդանիների խնամքի մասին խորհուրդներ, մաթեմատիկական խաղեր ու խնդիրներ: «Պատկոմի» առաջին համարում մի հաղորդագրություն կա այն մասին, որ տասնհինգամյա մի պատանի հանդես է եկել Էյնշտեյնի հարաբերականության տեսության մասին հրապարակային դասախոսություններով: Այս պատանին այսօր աշխարհահռչակ գիտնական Վիկտոր Համբարձումյանն է, որը տասնամյակներ ի վեր գլխավորում է մեր հանրապետության գիտությունների ակադեմիան:

Ամսագրի ստեղծման օրվանից տեսնում ենք նրա շուրջը համախմբված թե՛ արդեն անուն հանած, և թե՛ իրենց առաջին քայլերն անող շնորհալի գրողների, նկարիչների, երաժիշտների: Ամսագրում մեկը մյուսի ետևից հրապարակվում են Ստեփան Զորյանի մանկական, հետագայում արդեն դասական ճանաչված պատմվածքները, բուռն ծաղկում է ապրում Աթաբեկ Խնկոյանի ինքնատիպ տաղանդը: Ասպարեզ է իջնում մանկագիրների նոր սերունդ, որը պիտի տար իր դասականները: Ամսագրի 1925 թվի համարներից մեկում առաջին անգամ հանդիպում ենք մինչ այդ գրականությանն անհայտ մի անվան՝ «Արջի ճանկերում» (պատանի որսորդի հիշողություններից) պատմվածքի հեղինակին, որով և սկսվել է մեր գրականության պայծառ դեմքերից մեկի՝ Վախթանգ Անանյանի գրական գործունեությունը, մի հեղինակ, որի ստեղծագործություն-

ներն այսօր կարդում են աշխարհի 40-ից ավելի ազգությունների երեխաներ՝ իրենց մայրենի լեզվով:

«Պատկոմը», որը հետագայում վերանվանվեց «Հոկտեմբերիկ», իսկ ետպատերազմյան տարիներից՝ «Պիոներ», իր էջերում ինքնադրսևորման լայն ասպարեզ է տալիս նաև պատանի ընթերցողներին: Նրանք հանդես են գալիս բանաստեղծություններով, պատմվածքներով, նկարներով, իրենց զբաղեցնող տարբեր-տարբեր հարցերին նվիրված հոդվածներով:

Մի աշակերտ Թիֆլիսից պատմվածքներ էր ուղարկում ամսագրին՝ Գուրգեն Սևակ ստորագրությամբ, որ հետո պիտի դառնար ճանաչված լեզվաբան, ակադեմիկոս: Ահա մի այլ աշակերտի պատմվածք, որի հերոսը շատ է սիրում քիմիան: Պատմվածքի հեղինակն է Գագիկ Դավթյանը, որ դարձավ ճանաչված գիտնական, ակադեմիկոս, գլխավորում էր մեր գիտությունների ակադեմիայի ագրոքիմիական պրոբլեմների և հիդրոպոնիկայի ինստիտուտը:

Ամսագրի էջերում հաճախ ենք հանդիպում Մարտիրոս Սարյանի, Փանոս Թերլեմեզյանի, Հակոբ Կոջոյանի նկարազարդումներին: Ռոմանոս Մելիքյանը, Դանիել Ղազարյանն ու Ազատ Մանուկյանը ամսագրի էջերում հրապարակում են իրենց մանկական երգերը:

1962 թվից ամսագիրը սահմանել է ամենամյա մեկ մրցանակ՝ տվյալ տարում տպագրված լավագույն գրական երկի և մեկ մրցանակ՝ լավագույն նկարչական աշխատանքի համար: Այսօր ամսագիրն ունի նկարիչների և գրողների երկու տասնյակից ավելի դափնեկիրներ: Նրանք բոլորը, հատ ու կենտ բացառությամբ, «Պիոների» երեկվա ընթերցողներն են, երեկվա պիոներներ և կոմերիտականներ, իսկ այսօր հանդիսանում են մեր հանրապետության կերպարվեստի ու գրականության առաջատար ուժերը:

Տարիներ առաջ մեկը սրամտել էր, ասելով, թե՝ ով չի կարողանում գրող դառնալ, դառնում է մանկական գրող: Եվ սա դարձել էր թևավոր խոսք ու տարածված կարծիք: Ցավոք, այդտեղ որոշ ճշմարտություն կար: Ցանկացողի առջև մանկական գրականության դռներն ավելի հեշտ էին բացվում, և մանկական գրականության ասպարեզը դարձել էր նախադուռ, այսպես կոչված «մեծերի» գրականություն թափանցելու համար: Ում հաջողվում էր այդ «նախադռնով» մտնել և հետո այնտեղից էլ անցնել «մեծերի գրականությունը» և այնտեղ հաջողություն ունենալ, այլևս չէր վերադառնում մանկական գրականություն, համարելով, թե՛ մանկական գրող էր, դարձել է գրող, այլևս մանկական գրականությամբ զբաղվել՝ կնշանակի նահանջել գրաված բարձր դիրքերից: Մինչդեռ վաղուց հայտնի ճշմարտություն է. ով լավ է գրում մեծերի համար, նա լավ է գրում նաև մանուկների համար, և հակառակը, ով ինչ արվեստով գրում է մեծերի համար, նույնպիսի արվեստով էլ գրում է մանուկների համար:

Այսօր տեղի է ունենում հակառակը:

Մանկական գրականության ասպարեզը դադարել է մնալ միայն մանկագիրներին կամ գերազանցապես մանկագիրներին:

Մանկական գրականության վերջին տասնամյակի մնայուն արժեքներից է Պարույր Սևակի մանկական բանաստեղծությունների շարքը, որ մահից առաջ մեծ բանաստեղծը հասցրեց մուծել մեր մանկական գրականության ոսկե ֆոնդը: Այդ բանաստեղծությունների ժողովածուն, որ նա ինքը բախտ չունեցավ տեսնել, առանձին գրքով լույս տեսնելուց առաջ տպագրվեց «Պիոներում» և «Ծիծեռնակում»:

1971 թվին Հրանտ Մաթևոսյանը հանդես եկավ իր առաջին մանկական պատմվածքով, դառնալով ամսագրի այդ տարվա դափնեկիրը: Մաթևոսյանի այդ և հետագա պատմվածքները, «Պիոներում» հազիվ լույս տեսած, թարգմանվեցին և տպագրվեցին ռուսերեն և այլ լեզուներով:

«Պիոների» սիրելի հեղինակներից են Զորայր Խալափյանը, Ռուբեն Հովսեփյանը, Մանուկ Մնացականյանը, Հովհաննես Մելքոնյանը, Վարուժան Նալբանդյանը, Անահիտ Պարսամյանը, Նանեն Միքայելյանը, Էդվարդ Միլիտոնյանը, Յուրի Սահակյանը, Աշխեն Աբազյանը, երիտասարդ արձակագիրներ Հովիկ Վարդումյանը, Վարուժան Այվազյանը, բանաստեղծ Մաքսիմ Ոսկանյանը և շատ ու շատ ուրիշներ: Նրանցից շատերի «Պիոներում» տպագրված ստեղծագործությունները հետո լույս են տեսել առանձին գրքերով, դառնալով մեր մանկական գրականության մնայուն արժեքներից:

Ամսագրի աշխատանքներին իրենց անգնահատելի մասնակցությունն են բերում

գրողների ավագ սերունդը՝ Հովհաննես Շիրազը, Սիլվա Կապուտիկյանը, Վահագն Դավթյանը, Համո Սահյանը, Մարո Մարգարյանը, Աղավնին, Աղասի Այվազյանը: Ավագների կողքին ամսագրում պարբերաբար տեղ են գտնում մեր ընթերցողների՝ պիոներդպրոցականների ստեղծագործությունները, որոնցից ջոկվելու, բարձրանալու են նրանք, որոնցով պարծենալու ենք վաղը:

Անգնահատելի է ամսագրի աշխատանքներին հանրապետության նկարիչների բերած մասնակցությունը: Ակադեմիկոս, ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ Գրիգոր Խանջյանը, տասնամյակներ ի վեր ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ է, մոտիկ է կանգնած ամսագրի աշխատանքներին, ամենից ավելի և մեծապես նպաստում է ամսագրի գեղարվեստական ձևավորման որակի բարձրացմանը: Ամսագրի էջերում իրենց բարձրարվեստ ձևավորումներով հաճախ են հանդես գալիս ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամներ՝ վաստակավոր նկարիչ Ալեքսանդըր Գրիգորյանը, Հենրիկ Սիրավյանը, Կարեն Սմբատյանը, երիտասարդ նկարիչներ Աշոտ Բայանդուրը, Սարո Կալենցը, Անդրանիկ Կիլիկյանը, Ռուբեն Մանուկյանը, Խորեն Հակոբյանը, Միհրան Քեչօղլյանը և շատ ու շատ ուրիշներ:

Ամսագիրը նաև թարգմանում և իր ընթերցողներին է ներկայացնում ռուս և եղբայրական մյուս ժողովուրդների մանկական գրականության գոհարները, ծաղկաքաղ կատարում միութենական և հանրապետական նույնատիպ ամսագրերից:

«Պիոներ-դպրոցական կյանք» խորագրի տակ պարբերաբար նյութեր են տպագրվում թե՛ եղբայրական հանրապետությունների, թե՛ մեր պիոներների ու դըպրոցականների հետաքրքիր նախաձեռնությունների, կատարած ուշագրավ գործերի, նրանց ինտերնացիոնալ կապերի, այն ամենի մասին, ինչով բազմաբովանդակ է դառնում նրանց առօրյան: Այլ կերպ ասած, ամսագիրը շարունակում է հավատարիմ մնալ իր հիմնադրման օրվանից սահմանված ավանդությանը: Որքան կարելի է մոտիկ կանգնել կյանքին, ոչ միայն արտացոլել այն, այլև բոլոր միջոցները գործի դնել ազդելու համար նրա վրա, մասսայականացնել լավը, փառաբանել ազնիվն ու բարին:










ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

# ԴԱՇՏԻ ԿԱՐՈՏ

Ա՜խ, երնի ամպը լացել,
Խաղաղվել է այնտեղ,
Արտույտներն են վեր սլացել,
Դարձել թևոր կանթեղ:

Ու երնի սուր են բուրում
Այնտեղ ծաղիկ ու սեզ,
Ցողերն այնպես են փայլփլում,
Ծովողում են ասես:

Ուղին, որ խենթ քամու գրկում
Գալարվում էր դողով,
Մերկությունն է հիմա ծածկում
Իր վարսերի քողով:

Իսկ օրն ամռան՝ շողն արևի
Իշկամի պես ծամում
Ու իր բաշին կանաչ-կարմիր
Երազներ է տանում:

Կակաչները կանաչի մեջ՝
Կայծկլտացող անթեղ,
Ոտաբոբիկ լինեի ես
Ու լինեի այնտեղ:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

# ԻՆՔՆՈՒՐՈՒՅՆՈՒԹՅՈՒ՞Ն, ԹԵ՞ ԻՆՔՆԱԳԼԽՈՒԹՅՈՒՆ

● Մենակ էի տանը: Հանկարծ լսվեց դըռան զանգը: Շտապ մոտեցա դռանը և հարցրի.

— Ո՞վ է:

— Ես եմ, Նունե ջան, բաց արա:

Մորաքույրս էր մի կնոջ հետ: Արտաշատից էին գալիս և իհարկե, ուտելու որևէ բան կուզեին:

Խոստովանում եմ, որ դրանից առաջ ցուցաբերած իմ բոլոր ինքնուրույնություններր հաջող էին: Այո, հավատացեք, բայց այս անգամ ամեն ինչ եղավ հակառակը:

Այսպես...

Վերցրի մի քանի կարտոֆիլ՝ տապակելու համար, մաքրեցի, լվացի և կտրատեցի: Տգեղ ստացվեց, բայց դա դեռ ոչինչ: Սկսեցի յուղի մեջ տապակել:

Պատկերացրեք բոլորն այրվեցին, ծուխն ու տհաճ հոտն էլ լցվեց ամբողջ պատըշգամբով և ճաշասենյակով մեկ: Իհարկե, հյուրերը իմացան, բայց չիմանալու տվին: Թխվածք կտրտեցի, շոկոլադ դրեցի սեղանին, մուրաբա, կիտրոն, շաքար և թեյ: Բայց սա էլ անհաջող ստացվեց: Թեյը բերելիս սայթաքեցի և ընկա, այս անգամ իմ անշնորհք և արագ քայլելու պատճառով: Եվ բաժակներն ու թեյամանը կոտրեցի, հատակը թրջեցի, և ինձ վնասեցի:

Ծնողներս եկան, բարկացան, սկսեցին ինձ նախատել: Ես երկար ժամանակ դըպրոց չգնացի՝ ոտքիս վնասվածքի պատճառով:

Իհարկե, սա մի լավ բան չէ, որ գրում եմ, բայց համարձակվում եմ գրել, որովհետև այժմ այդպիսին չեմ: Գլուխ չեմ գովում, բայց պիտի ասեմ, որ հիմա ամեն ինչ կարողանում եմ անել, նույնիսկ կոտլետ, պոմիդորով ձվածեղ, յոքով և այլ տեսակի ճաշեր, թխվածքներ եմ պատրաստում և շատ հաջող է ստացվում: Գրրում եմ ու ինքս ինձ վրա ծիծաղում:

Մորս ասածի պես ես էլ եմ ինքս ինձ ասում. «Երեսդ սպիտակ»:

ՆԱԻՐԱ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ

Երևանի 162 միջն. դպրոցի 8-րդ դաս.

● Ծնողներս հեռու տեղ էին մեկնել: Գընալուց առաջ մայրս ինձ որոշ հանձնարարություններ էր տվել: Երեկոյան պետք է կանչեի հորաքրոջս, որպեսզի կթեր կովը: Մայրս ինձ չէր վստահում, բայց ես շատ էի ուզում հարմար առիթի դեպքում փորձել: Եվ ահա առիթը ներկայացել էր:

Զգուշությամբ բացելով գոմի դուռը, ներս մտա: Տեղավորվելով կովի կողքին, դույլը դրեցի գետնին: Վախվխելով մեկ-երկու անգամ քաշեցի պտտահած պտուկը, մեկ էլ կովը ոտքի ուժեղ հարվածով մի կողմ շպրտեց դույլը: Վախեցած վեր թռա և առանց դույլն ու աթոռը վերցնելու, դուրս փախա: Ես չկարողացա կթել, հորաքրոջս էլ չկանչեցի:

Առավոտյան եկան ծնողներս: Մայրս մտավ գոմ և տեսավ դույլը մի կողմ ընկած, աթոռը՝ մի կողմ: Կովը մզզում էր, ստինքները լցվել, ուռել էին:

Մայրս իսկույն գործի անցավ, ինձ էլ մի լավ նախատեց:

Ինքնուրույնություն էի ուզում ցուցաբերել, դուրս եկավ ինքնագլխություն:

ՎԱՐԻՆ ՍԱՐԳՍՅԱՆ

Արտաշատի շրջանի Շահումյան գյուղի միջն. դպրոցի 10-րդ դաս.

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ՊԻՈՆԵՐ-ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# «Ո՞վ կարող է մրցել մեզ հետ»

Վերաշինվող եկեղեցու կենտրոնական մուտքի մոտ հավաքվել էին զբոսաշրջիկներ: Նրանց բանվորական հագուստները շփոթեցրին ինձ:

— Ա՛յ քեզ նորություն, մի՞թե հյուրը աշխատում է:

Մոտենում եմ խմբին ինչ որ բան բացատրող շիկահեր կնոջը:

— Վերգինե Պետկյավիչենե,— ժպտալով ներկայանում է նա,— մենք Լիտվայից ենք. արդեն տասնըչորս օր է, ինչ այստեղ ենք՝ Հայաստանում, իսկ ավելի ստույգ՝ մեր հասցեն է՝ Աշտարակի շրջան, գյուղ Կարբի, աշխատանքի և հանգստի «Բարեկամություն» ճամբար: Ու եթե աշխատում ենք, նշանակում է մի քիչ էլ տանտեր ենք:

Արայի լեռան ստորոտին գտնվող Կարբի գյուղը արդեն հինգ տարի հայտնի է իր ճամբարով: Գյուղի դըպրոցը բարեկամական կապերի մեջ է Մերձբալթյան հանրապետությունների տարբեր ուսումնական հաստատությունների հետ: Ամեն տարի Կարբիից բազմաթիվ կոմերիտականներ են գնում Մերձբալթիկայում աշխատելու: Իսկ այնտեղից կոմերիտականները գործուղվում են Կարբի:

... ճամբարի մուտքի մոտ, միջօրեի արևից խեղդացած ծիրանիների տակ հանդիպեցինք մեր մյուս բարեկամներին՝ Լատվիայի Կուլդիգսկի շրջանի Սկրունդա գյուղի դպրոցականներին: Խմբի ղեկավար Անիտա Սերեժան հրճվանքով հաղորդեց.

— Երեխաները չեն ձանձրանում, չեն տրտնջում: Սահմանված չորս-քորսուկես ժամյա աշխատանքային օրը պայմանական է նրանց համար: Օրվա արդյունքները չեն գոհացնում երեխաներին: Մեզ սկզբից տարան ճակնդեղ հավաքելու, հետո պոմիդորի մարգերում քաղհանի, իսկ հիմա ծիրան ենք հավաքում, խումբը միանգամից ընտելացավ բոլոր աշխատանքներին: Ծիրանահավաքին յուրաքանչյուրի պլանը 10 արկղ էր, բայց երեք օրվա ընթացքում ամեն մեկը հավաքեցին 18 արկղ ծիրան: Երեխաները հաճախ են կրկնում. «Ով կարող է, թող գա մրցի մեզ հետ»:

Մեր զրույցին միանում է Երևանի Նար-Դոսի անվան դպրոցի աշխարհագրության ուսուցչուհի Աիդա Հովհաննիսյանը, որը իր 50 աշակերտներով լրացնում է աշխատողների ինտերնացիոնալ ջոկատը.

— Ճամբարում ավելի են ընդգծվում դպրոցականների աշխատասիրությունը, նպատակամղվածությունը, սրտացավությունը գործի հանդեպ:

Իսկ ինչպե՞ս է կազմակերպվում դպրոցականների հանգիստը ճամբարի շեֆ կազմակերպությունը՝ Կարբիի սովխոզը:

Աշխատանքից հետո խաղասենյակները ու խաղադաշտերը լցվում են աշխույժ աղմուկով: Շաբաթական մի քանի անգամ կազմակերպվում են էքսկուրսիաներ, որոնք նպաստում են ավելի մոտիկից ճանաչելու հայկական մշակույթի զանազան հուշարձաններ: Կազմակերպվում են նաև հանդիպումներ հայ բանաստեղծների ու արձակագիրների, անվանի դերասանների ու մարզիկների հետ:

... Հանգստից հետո ռադիոհանգույցը ազդարարում է տողանի ժամ: Կոմերիտականները զեկուցում են օրվա իրենց կատարած աշխատանքների մասին, ընտանձնում նոր պարտավորություններ: Իսկապես, նրանց հետ դժվար է մրցել:

ՆԱԻՐԻ ՍԱՐԳՍՅԱՆ

# «Ով աշխատի՝ նա կուտի»

Բերքն այս տարի շատ է Էջմիածնի շրջանի Դոխս գյուղում: Ցանելիս եթե չարչարվել են, խնամել ու առաջին ծիլերով մտահոգվել, ուրեմն բերքահավաքը նաև տոն է: Բայց ի՞նչ ուրախություն առանց դպրոցականների, առանց նրանց կատակների, ծիծաղի, նաև՝ առանց նրանց աշխատանքային գրոհի:

— Իսկական գրոհ,— ժպտում է նախագահը՝ ընկեր Հարությունյանը,— իրենց եռանդով վարակում են նաև մեծահասակներին:

Իրար վրա շարված արկղերը, թվում է, ուր որ է շուռ են գալու: Աչքս արկղերին է ու ինքնաբերաբար մոտիկ եմ կանգնում, որ կարողանամ պահել: Ծիծաղում են.

— Մեր հավաքածն է, չենք թափի:

Չեն թափի, այդ արկղերի վրա նրանք չարչարվել են, նրանք զգացել են աշխատանքի հոգնությունն ու բերկրանքը:

— Եթե սովոր չես, խորդենու բույրից կարող ես հարբել,— ասում է Նազանին,— բայց մենք արդեն սովորել ենք:

— Առաջին օրերին դժվար էր,— զրույցին միանում է իններորդցի Մարինեն,— տուն գնալիս մի թեթև գլխապտույտ էինք ունենում, երևի կռացած քաղհան անելուց: «Խամով» էինք ընկնում:

Հիմա արդեն մեծահասակներից ետ չէին մնում, չկար առաջին օրերի անսովորությունը, վարպետացել էին, արագ էին աշխատում: Սկզբում ձանձրալի թվաց աշխատանքը, տրտնջացին, ի՞նչ է, ուրիշ գործ չկա՞: Բայց հետո հասկացան, որ պետք է աշխատեն այնտեղ, որտեղ դրա կարիքը կա: Աշխատեցին: Տատիկները՝ օրհնանքներ, իսկ մյուսները՝ գովեստները չխնայեցին:

Երբ խորդենու դաշտում հանդիպեցի նրանց, մենավոր ծառի տակ հացի էին նստել: Հրավիրեցին:

— Ով աշխատի՝ նա կուտի... բայց, ոչինչ, եկեք մեր հացը կիսեք մեզ հետ,— կատակեց Սիման:

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

ԳԱԳԻԿ ԹՈՎՄԱՍ

## ՏԶԶԱՆԸ

Տզզում է տղան,
Տզզում է մեղուն,
Բայց, տեսեք, տղան
Արցունք է թափում,
Իսկ մեղուն ահա
Վառ ծաղիկներից
Նեկտար հավաքում:

Խնդրեցինք մեղվին
Մեղր տա տղին,
Որ ՝ղ չտզզա
Տեղի-անտեղի:

Բայց նա տզզում է.
— Մեղր չեմ ուզում,
Ես մեղվի նման
Թռչել եմ ուզում:



## ՏՂԱՆ ՈՒ ԱՄՊԸ

— Լսի՛ր, ամպի՛կ,
Արի ներքև՛,
Նստեմ մեջքիդ՝
Տա՛ր ինձ վերև:
Տա՛ր հասցրու
Սարի ուսին,
Այնտեղից էլ՝
Դեպի լուսին:
— Օ՜, այդ ի՞նչ ես
Ասում դու ինձ,
Թե որ իջնեմ
Ես երկնքից,
Անմիջապես
Ջուր կդառնամ,
Ու առվի հետ
Կհեռանամ...

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# ԱԼՎԱՐԴԻԿԻ «ԱԿԱԴԵՄԻԱՆԵՐԸ»

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ



Երբ Ալվարդիկը փոխադրվեց երկրորդ դասարան, նրա պատմաբան մայրը՝ Վերգինեն հայտարարեց.

— Տանում եմ երաժշտական դպրոց:

— Երեխան եթե իմ ցեղից է, նրա երաժըշտական կարողությունները մեզ հայտնի են: Բայց թե տանում ես, լավ ես անում, վերջը բարի լինի,— չէր ուզում ասել, բայց ասաց Ալվարդի պապը:

— Հայրի՛կ, դու լավ գիտես նաև մերոնց: Հայրս՝ երգող, եղբայրներս ու քույրերս՝ երգող, մայրս՝ պարող: Ինչո՞ւ չես կարծում, որ Ալվարդս մերոնց է քաշել:

— Դու ձերոնց չես քաշել, աղջիկդ ձերոնց քաշե՞ց,— ասաց Ալվարդիկի հայրը:

Տատը պաշտպանեց հարսին.

— Մեր հարսը մեզ է նման: Խնամիներիս ռանգ-ռանգ երգին էլ մատաղ, իմ անձեն հարսին էլ մատաղ: Խաթրին մի՛ կպեք, թողե՛ք երեխային տանի փորձի: Պապը դարձյալ թերահավատորեն գլուխն օրորեց:

— Հայկին էլ փորձեցինք երաժիշտ դարձնել...

Հայկը պապի առաջին թոռն էր, որ հիմա համալսարանի ֆիզիկայի ֆակուլտետի ուսանող է: Երաժշտական դպրոցը այն ժամանակ նոր էր բացվել: Հայկը տեսավ իր ընկերները ոգևորված ջութակից ու դաշնամուրից են խոսում, ինքն էլ տնեցիներին ստիպեց տանել իրեն երաժշտական դպրոց: Խաթրից չելան, տարան: Դպրոցի դիրեկտոր ընկեր Դանիելը սկըսեց ծափից: Ծափերի բազմաթիվ տարբերակներ փորձարկեց, բայց Հայկի ոչ մի ծափը ընկեր Դանիելի ծափերին չբռնեց: Նա վերջնականապես հուսահատվելուց առաջ մոտեցավ դաշնամուրին:

— Հիմա էլ այստեղ փորձենք: Ապա, մոտեցի՛ր, բալի՛կս,— քնքշանքով մոտ հրավիրեց և բացատրեց նրան անելիքը,— հիմա կխփեմ ստեղներին, դու լա՛վ լսիր և նմանատիպ ձայներ հանիր: Սկսում եմ:

Եվ սկսեց: Ցուցամատով խփեց առաջին ստեղին և նայեց երեխայի դեմքին: Դաշնամուրի արձակած հնչյունը երկարեց ու կամաց-կամաց մարեց: Հայկը ո՛չ սկիզբն էր բռնում, ո՛չ վերջը: Ստեղները հերթով ինչ որ բան ուզեցին հուշել նրան ու հուսախաբ լռեցին:

— Չէ՛,— ընկեր Դանիելը բարեհոգի մարդ էր, նայեց Հայկի սիրուն աչք-ունքին, լայն ձեռնափերին, տռուզ շուրթերին ու առողջ վզին,— ի՞նչ կլարնետ կընվագեիր ու դհոլ կխփեիր: Ափսո՛ս... երաժշտական լսողություն բոլորովին չունես: Դպրոցում ո՞նց է սովորում,— դարձավ հարցրեց երեխայի մոտ կանգնած պապին:

— Գերազանց: Երկրորդ դասարան է փոխադրվել, բայց չորրորդ դասարանի խնդիրներ է լուծում, էլ չեմ ասում, թե ոնց է շախմատ խաղում:

— Շատ լավ է, հայրիկ ջան, որ էդպիսի ընդունակություններ ունի թոռդ, ոչինչ, թող ջութակահար ու դաշնակահար չդառնա, աշխարհը չի քանդվի:

Պապը ամենևին չվշտացավ, երեխայի ձեռքից բռնած խանութները պտտեցին, ուզած քաղցրավենիքը գնեցին և ուրախ, զվարթ տուն դարձան:

Գյուղի առաջին նշանավոր մարդը նրանց ազգից էր ելել: Իր ժամանակվա անհնարին պայմաններում նա հասել էր Թիֆլիս, ավարտել Ներսիսյան դպրոցը, այնտեղից էլ Բեռլին, դարձել մաթեմատիկոս: Նրանից հետո ուսման կարոտն ու տենչը նրանց ուրիշ ազգականների հասցրին ուրիշ երկրներ ու քաղաքներ: Իսկ երբ գիտության դռները լայնորեն բացվեցին բոլորի առաջ, Առաքելյանների նոր սերունդը հախուռն կերպով գրոհեց գիտության բարձունքները: Եվ ծնվեցին նոր մաթեմատիկոսներ ու ֆիզիկոսներ, բժիշկներ ու ինժեներներ, կենսաբաններ ու աստղագետներ: Եթե դպրոցում Առաքելյան ազգանունով աշակերտ կար, անպայման գերազանցիկ էր:

Առաքելյաններն նաև կենսախինդ մարդիկ էին, սառ-խոսող, սրամիտ ու կատակող: Բայց զարմանալի կերպով բոլորն էլ զուրկ էին երաժշտական ընդունակությունից: Ոչ ոք նրանց չէր տեսել երգելիս ու պարելիս, նույնիսկ տակտով ծափ տալ չէին կարողանում: Դրա համար էլ գյուղի ամենատարեց Առաքելյանը՝ Ալվարդիկի պապ Մովսեսը, համոզված հայտարարում էր, որ իրենցը խնդիրներ լուծելն է: Բայց նրա պատմաբան հարսը այլ կարծիք ուներ և հենց թերթում երևաց երաժշտական դպրոցի ընդունելության հայտարարությունը, անմիջապես փաստաթղթերը պատրաստեց, անմիջապես հանձնեց, ընկեր Դանիելին էլ դիտողություն արեց, թե՝ ճիշտ չէ, որ երեխային միանգամից քննում եք.

— Իմ երեխան դաշնամուրին մատով կպած չկա,— ասաց,— լավ կլինի, նախ ծանոթանա գործիքին, մի քիչ սովորեցնեք, հետո...

Ընկեր Դանիելը ժպտալով պատասխանեց, որ հենց այդպես էլ անում են, տասը օր սովորեցնում են, տասնմեկերորդ օրը անցնում ընդունելության:

Ալվարդիկը տասն օր մոր ձեռքից բռնած գնաց ու եկավ:

— Մեծ աշխարհ է, ամեն բան կպատահի,— մտածեց Ալվարդիկի պապը,— կարող է Ալվարդիկը, մորական կողմին է քաշել:

Պապի հպարտությունը կրկնապատկվեց այն մտքից, որ իր թոռ Ալվարդիկը երկու կողմերի լավագույն հատկանիշներով է օժտված:

— Երանի ինձ,— մտածեց,— էս մի թոռնիկս բոլորից անցնելու է:

Մտածեց ու տասնմեկերորդ օրը երեխայի թշիկները անուշ-անուշ համբուրեց, ճամփեց երաժշտական դպրոց:

Երեկոյան Առաքելյանների բազմանդամ ընտանիքը հավաքվել էր բակի մեծ թթենու տակ: Ասում-խոսում էին, կատակում ու զվարճանում: Հետո անցան Ալվարդիկին:

— Ապա, մաե՛ստրո, մոտ եկ,— հայրը ծիծաղելով Ալվարդին մոտ կանչեց,— պատմի՛ր ընդունելության մասին, ընկեր Դանիելը գոհ մնա՞ց:

— Ընկեր Դանիելը ինչ ասաց՝ արեցի,— Ալվարդիկը կանգնեց բոլորի մեջտեղ, տեսավ բոլորը անհամբեր իրեն են նայում, խնդմնդալով սկսեց,— ընկեր Դանիելը ասաց՝ երեսով դեպի պատը կանգնիր: Կանգնեցի: Ասաց՝ լավ լսիր, ծափ եմ տալիս: Լավ լսեցի, ծափ տվեց: Հետո ասաց՝ իմ ծափերի նման ինքդ ծափ տուր, — Ալվարդիկը սկսեց ծափ տալ, երեխաները ձայնակցեցին: Մեծերը ծիծաղում էին, պապը հիացած նայում էր ու մտքով հեռուները գնում, հասնում մեծ դահլիճներ, ուր ծափահարում էին իր դաշնակահարուհի թոռնիկին: Ալվարդիկը նախ ինքը հոգնեց: Նորից լռջացավ և լռջության միջից ասացին.

— Շարունակիր, տեսնենք վերջը ի՞նչ եղավ:

— Հետո՛... — բառը երկարացրեց,— հետո շատ ծափ տվեցինք: Ասաց՝ բավական է, հիմա էլ ե՛կ դաշնամուրի մոտ,— Ալվարդիկը հանկարծ տխրեց:

Շարունակությունը պարզ էր հինգերորդ կուրսեցի Հայկի համար: Նա Ալվարդիկին բարձրացրեց, մի քանի անգամ վեր թռուցրեց՝ շարժելով մյուս երեխաների նախանձը, հետո դրեց ուսերին ու կեղծ հառաչանքով ասաց.

— Է՛հ, Ալվարդիկ ջան, իմ տունն էլ էդ դաշնամուրը քանդեց:

Ալվարդիկը դեռ ասելիքը չէր ավարտել և առանց հասկանալու մեծերի հեգնանքը, հենց Հայկի ուսերին նստած էլ շարունակեց.

— Տասնմեկ հոգի էինք ընդունվելու, ութս ընդունվեցինք, երեքս չընդունվեցինք:

— Հիմա դու ութի՞ մեջ ես, թե՞ երեքի,— հարցրին:

— Երեքի...

— Չէ, բալա, սա էլ մեզ քաշեց,— ժըպտալով գլուխն օրորեց պապը:

Տարին անցավ, Ալվարդիկը գերազանցով փոխադրվեց եռրորդ դասարան: Նրա պատմաբան մայրը, որ արվեստի խիստ երկրպագու էր, չէր կարողանում հաշտվել այն մտքի հետ, որ իր երեխաները չէին փայլելու արվեստի որևէ ասպարեզում: Այս անգամ շրջանային գեղարվեստի դպրոցի հայտարարությունը երբ ձեռքն առավ, նորից փաստաթղթեր պատրաստեց, հանձնեց դպրոց: Այստեղ Ալվարդիկին առանց փորձելու ընդունեցին:

Նոր ուսումնական տարվանից Ալվարդիկը դարձավ երկու դպրոցի սան: Շաբաթական երեք անգամ դասերից հետո, պապի ձեռքից բռնած, ավտոբուսի կանգառն էր շտապում, որ գեղարվեստի դպրոց գնա: Տանող-բերողը պապն էր:

Պապին էլ էր դուր գալիս գնալ-գալը: Սրտի ուզած ժամանակ երեխայի հետ դասի էր նստում, ուսուցիչների հետ քայլում միջանցքում, զրուցում, խորհուրդներ տալիս, Ալվարդիկին ոգևորում.

— Նկարելը երգել չի, բալա, որ ուզենաս, կարող ես նկարել:

— Շատ եմ ուզում, պապ, բայց... — Ալվարդիկի աչքերը արցունքոտվում էին, պապի սիրտը մղկտում էր:

— Էս ակադեմիաները որտեղի՞ց բուսան,— պապը սրտնեղում էր,— մեզ համար խաղաղ ապրում էինք, երեխաներս միամիտ իրենց խնդիրներն էին լուծում:

Գեղարվեստի և սպորտ դպրոցները նույն շենքում էին, իրար կից դասասենյակներում: Պապը հաճախ իր սպասման ժամերը այդտեղ էր անցկացնում: Շախմատ էր խաղում երեխաների կամ ուսուցիչների հետ: Երբեմն Ալվարդիկը դասերը վերջացնում էր, սպասում պապի հերթական խաղի ավարտին: Հետո կամացկամաց միացավ իր տարեկիցներին, սկսեց նրանց հետ շախմատ խաղալ: Անկատելի պապ ու թոռ դարձան սպորտդպրոցի հիմնական հաճախորդներ և անպարտելի շախմատիստներ: Սպորտդպրոցի դիրեկտորը, Ալվարդիկի խաղը տեսնելով, կանգնեց ու համառորեն պահանջեց, որ երեխան իրենց սանն է, այդպիսի շախմատային տաղանդը ինքը ոչ մեկին չի զիջի: Գեղարվեստի դպրոցի դիրեկտորն ուրախացավ: Օրերից մի օր էլ հանդիպեց Ալվարդիկի մորն ու ասաց.

— Ձեր աղջիկը նկարչական շնորհք չուներ: Լավ արեցիք, որ սպորտդպրոց տարաք:

Վերգինեն հանկարծակիի եկավ:

— Ինչպե՞ս թե սպորտդպրոց...

Երեկոյան ուզեց զայրույթը թափել Ալվարդիկի գլխին, հայրն ու պապը հակահարձակման անցան:

— Աղջիկս երեք ակադեմիա փոխեց, մինչև իր իսկական տեղը գտավ, բռընկված ու անմիջապես մարած վեճը կատակով ավարտեց հայրը:



# Երբ պատերազմ չլիներ...

Ջրվոր է եղել պապս՝ Լիպարիտ Առաքելյանը, հողագործ, հողին կապված և հողին հալված: Նա սիրել է իր աշխատանքը և արևածագից առաջ հացի փոքրիկ կապոցը ձեռքին, բահն ուսին գնացել է հանդը: Մեր սարերից իջնող առվի վճիտ ջրով ջրել է արտը, այդ ջրին խառնել իր ճակատի քրտինքի մարգարտանման կաթիլները: Ու այդպես ուրախ ու այդպես խաղաղ իր սիրելի «Հեյ, Նազան իմ յարը» երգելով, արծաթ գոտիներ շարելով արտում, անտրտունջ աշխատել է պապս: Կեսօրվա տապին, արտի ներքևում երևացել է նորահարս տատս՝ մածնաթանով լի ամանը ձեռքին:

Իմ բարի, իմ խելոք ու աշխատասեր պապ, պատահել է՝ ամբողջ օրը մենակ ես աշխատել, որ քո ընկեր Գարեգինը հիվանդ երեխային տանի բժշկի: Երևի օրվա մեծ մասն էլ այդ մտքերով ես տարվել, թե հանկարծ Գարեգինի երեխային բան չպատահի:

Պատերազմ: Հայրենական մեծ պատերազմ...

Կապույտ ու ջինջ երկինքը պատվել է հրով ու ծխով: Սպիտակաթև աղավնիների փոխարեն մեր քաղաքների վրայով ոռնոցով թռել են ռմբակոծիչները, կանաչ արտերը տրորելով անցել են թշնամու անթիվ զորքերն ու զրահապատ տանկերը և քարուքանդ արել մեր գյուղերն ու քաղաքները:

Հայրենիքի պաշտպանության համար կռվի է ելել նաև իմ ջրվոր պապը, որը բահը թողել է արտեզրին, վերջին անգամ նայել առատ բերք խոստացող ցորենի կանաչ արտերին, շուրթերից թռել, անհետացել են իր սիրած «Հեյ, Նազան իմ յարը» երգի բառն ու եղանակը: Վրեժով է լցվել միշտ բարի, միշտ անվրդով պապիս խաղաղ հոգին:

Մյուսների հետ հերոսի նման կռվել է թշնամու դեմ, զոհված ընկերների շիրիմի վրա՝ երդվելով կռվել, թշնամուն ջախջախել իր իսկ որջում:

Չկա պապս: Չկա նաև նրա ընկեր Գարեգինը, նրանք հուշ են դարձել: Հուշ են դարձել, չեն մոռացվել: Եթե պատերազմը չլիներ, իմ ու Անահիտի պապերն էլ իրենց թոռների համար հեքիաթներ կպատմեին: Մեր Նազան և Ծաղիկ տատերն էլ ժամանակից շուտ կորամեջք չէին դառնա և ամեն-ամեն ինչ լավ կլիներ:

Իմ լավ պապի, քո Նազան կինն ու ընկերոջդ Ծաղիկ կինը ձեր եղբայրությունն հավերժացնելու համար խնամիներ են դարձել: Այն հիվանդ երեխան, որի համար մի ամբողջ օր մենակ ես աշխատել, ապրեց: Ապրեց անհայր, ապրեց դժվարություններով, ինչպես քո զավակները: Քո միակ աղջկա ամուսինն է, բազմանդամ ընտանիքի հայր: Իսկ դու և Գարեգին պապիկը ապրում եք մեր հուշերում: Ձեր անուններն էլ են փորագրվել հուշարձանի մարմարյա տախտակին:

**ՄԼԱՎԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ**
Ազիզբեկովի շրջ. Կարմրաշենի միջն. դպրոցի 7-րդ դաս. աշակերտ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՀԱՑՅԱՑ ԴՐԱԽՏ

Տարոնում, Արածանի գետի ձախ ափին, Աշտիշատ քաղաքի մոտ, Ցուլ կոչվող լեռան ստորոտում, հացենու մի հնամենի պուրակ է եղել, որն, ինչպես հավաստում է հինգերորդ դարի պատմիչ Փավստոս Բուզանդը, կոչվել է Հացյաց դրախտ: Պատմիչն ասում է, թե այս պուրակում էր գտնվում այն սրբազան աղբյուրը, որի ջրով իբր հայ զորքը մկրտվել և քրիստոնյա է դարձել:

Բայց ինչո՞ւ է պուրակը կոչվել Հացյաց դրախտ: Իրավ, գեղեցիկ ծառ է հայկական հացենին՝ ձիգ իրանով, մանր, մոխրագույն ու ողորկ տերևներով միակուտ, երկայնկեկ պտուղներով և այնպիսի պահվածքով, որ նմանվում է գոտին միշտ պնդած զորականի: Բայց ո՛չ գեղեցկուհի է, ո՛չ քաղցրապտուղ, ոչ էլ որևէ մեկը գուշակություն է արել նրա տերևների սոսափյունով:

Տարոնում ամենաշատ գազպեն լինում է այս պուրակում: Գազպեն կամ մանանան Հայաստանի աշխարհի երկրորդ մեղրն է: Մեր նախահայրերը այն համարել են երկնային պարգև և վայրը, ուր գազպեն էր լինում, նրանց աչքում դրախտ էր: Այդ պատճառով էլ Տարոնի հացենիների պուրակը ստացել է Հացյաց դրախտ անունը:

Ամենահրաշալի գազպեն լինում է Տարոնում և Սասունում: Մեղրահամ այդ քաղցր խեժը նստում է հացենու տերևների, մասրուտակ խոտի և փշոտ գազթփի (որից էլ գազպեն անունը) վրա: Այդ տերևների հյութը գոլորշանում է և մութն



ընկնելիս ցողանման հատիկներ դարձած թափվում գետնին: Լուսադեմին հացենու տերևները և կանաչ բացատները ծածկըվում են մեղրանման թանձր հյութով: Գազպենը լինում է չորս տարին մեկ, հուլիս ամսին: Կանայք՝ հետները տաշտեր առած, խմբերով մտնում են անտառ: Տաշտերը լցնում են ջրով և փունջ-փունջ տերևները նրա մեջ թաթախելով լվանում այնքան, որ ջուրը ստանա խաղողի քաղցուի (շիրայի) հյութեղություն: Այդ քաղցուն եփում են կաթսաների մեջ և պնդացած հյութը լցնում հողե բրիկները: Այդ հյութից պատրաստում են ամենաքաղցրահամ ուտելիքները:

Գազպենատու Հացյաց դրախտ պուրակը եղել է նաև սրբատեղի:

# ԽՈՍՐՈՎԻ ԱՆՏԱՌ

Սովետական Հայաստանի ամենահին բուսական թանգարանը Խոսրովի անտառն է, որ տարածվում է Արաքսի ձախ վտակ Ազատ (Գառնի) գետի ափերին: Այն տնկել է տվել Խոսրով Բ Կոտակ հայ թագավորը, մոտ 330 թվականին: Այդ մասին հիշատակում է Պատմահայր Մովսես Խորենացին: Նույն դարի մի ուրիշ պատմիչ՝ Փավստոս Բուզանդը, ավելի մանրամասն է նկարագրել այդ նըշանավոր արհեստական անտառի ընդարձակությունն ու դիրքը: Թագավորը ըսկըզբում տնկել է տվել կողք-կողքի երկու անտառ: Մեկը կոչվել է Տաճար Մայրի, որն սկսվում էր Գառնի ամրոցի մոտից, հասնում Դվին, մինչև Տիկնունի կոչվող պալատը: Մյուսը տնկվել է դրանից հարավ, Արաքսի, Դվինի և Արտաշատի միջև եղեգնուտի եզերքով և կոչվել է Խոսրովակերտ: Երկու անտառներն էլ պարսպապատել են, առանց իրար հետ կցելու:

Իսկ ինչու՞ են անտառներից մեկը կոչել Տաճար Մայրի:

Հին հայերենում մայրի նշանակում է սոճու տեսակ, նաև՝ առհասարակ անտառ, ծառաստան: Տաճար Մայրի նշանակում է սրբավայր-ծառաստան կամ սրբազան անտառ:

Երկու անտառներում էլ ամենից շատ տնկվել են կաղնի ու սոճի: Բայց թագավորը չի բավարարվել միայն ծառեր տընկելով: Նրա հրամանով ամեն տեսակ կենդանիներ են հավաքել ու լցրել այդ անտառները, որով դրանք դարձել են արքայի ու արքունականների որսազվարճության և զինավարժության վայրեր: Այդ անտառներում եղել են կչկչաձայն առապարներ (քարի կաքավ) և վիմասույզ հայկական սև կաքավներ, եղեգնաբնակ ու թփամուտ աքարներ, որոնք անուշահամ միս ունեին և հետագայում համարյա վերացան անխնա կոտորվելու հետևանքով:

Ժամանակի ընթացքում այդ երկու անտառները, որ հնում ավելի մեծ տարածություն էին զբաղեցնում, միացան և կոչվեցին Խոսրովի անտառ: Օտար նվաճողներն իրենց ասպատակությունների ժամանակ ոտքի կոխան են դարձրել նաև այս վայրը, հատել ընտիր ծառաստանը, ոչընչացրել կենդանական աշխարհը:

Սովետական իշխանությունը պաշտպանության տակ է առել այս բնական թանգարանը: 1958 թվականին Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ կազմակերպվել է Խոսրովի պետական արգելանոցը, որն զբաղեցնում է 27 հազար հեկտար տարածություն: Այն տարածվում է Գեղամա լեռնաշղթայի հարավ-արևմտյան և Ուրծ, Երանոս, Դահնակ, Իրից լեռ, Խոսրովասար լեռնաբազուկների լանջերին: Այժմ այստեղ աճում են գիհու նոսր անտառակներ, կաղնուտներ և ուրիշ ծառատեսակներ ու բույսեր: Կամաց-կամաց հարստանում է նաև արգելանոցի կենդանական աշխարհը: Այնտեղ կան հայկական մուֆլոն (վայրի ոչխար), բեզոարյան այծ, գորշ այծ, վարազ, աղվես, նապաստակ, ընձառյուծ, լուսան, կզաքիս, գայլ, գորշուկ, ուսուրական բծավոր եղջերու, բազմատեսակ թռչուններ, սողուններ:

Եթե չեք այցելել, անպայման այցելեք Խոսրովի պետական արգելանոցը:

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 11. ՈՐՍՈՐԴՆԵՐԸ ՀԱՅՏՆԵՑԻՆ

1880-ական թվականներին Արցախում, Թարթառ գետի ձախ ափի քարանձավներում կատարվեց հայտնագործություն, որը չափազանց զարմանալի պատմություն ունի: Սարգիս Ջալալյանը այսպես է նկարագրում.

«Մի մահմեդական որսորդ, այդ կողմերում որս անելիս վիրավորում է մի վայրի այծի: Վիրավոր այծը հոգեվարքի մեջ թավալգլոր գալիս ու հանկարծ անհետանում է: Որսորդը մոտ գալով մի պահ զարմանում է, թե ուր կորավ որսը, հետո նկատում է մի անցք: Մոտենում է, տեսնում, որ գետնի մեջ փորված քարայր է, մուտքը գետնի երեսին: Վրայից ծածկըված է եղել փտած տախտակներով ու հողով, քարերով քողարկված: Վիրավոր այծը ընկնում է դրանց վրա, ջարդում փտած տախտակները ու ընկնում այրի մեջ: Որսորդը իջնում է այրը ու որսի կողքին հանկարծ անձավի կիսախավարում նկատում է իրար վրա դարսած բազմաթիվ ձեռագիր գրքեր: Մեկը վերցնում է, քարայրի մուտքը առաջվա նման քողարկում ու գնում Շուշի և Ղարաբաղի թեմի առաջնորդ Բաղդասար Մետրոպոլիտին հայտնում ձեռագրերի մասին: Բաղդասարը նրան պարգևատրում է ու կարգադրում ձեռագրերը տեղափոխել իր նստավայրը: Մետրոպոլի մահից հետո ձեռագրերից մի քանիսը վաճառվում են, իսկ մնացածը տեղափոխվում է Էջմիածնի մատենադարանը: Այդ ձեռագրերից ամենաարժեքավորը հրաշալի մանրանկարներով զարդարված մի Մաշտոց է, որը ինչպես վկայում է հիշատակարանը, գրված է Մաշտոցի աշակերտ Ստեփանոս Վարդապետի ձեռքով»:

Այդ ձեռագրերը հավանաբար թաքցվել էին անհանգիստ 18-րդ դարում, երբ Արցախի անհնազանդ ժողովուրդը, Րաֆֆու

խոսքերով ասած, «ապրում էր քարանձավների խորքերում, կերակրվում էր իր անտառների պտուղներով, իր անասունների բարիքներով և որպես դարանամուտ մի գազան իր թաքստոցի միջից հարձակումներ էր գործում, երբ թշնամին հանդգնում էր վրդովել իր խաղաղությունը»:

Այս հայտնագործությունը զարմանալի նման է հեռավոր Պաղեստինում՝ Մեռյալ ծովի ափերի Կումրանյան համայնքի ձեռագրերի հայտնաբերման պատմությանը: Ահա այն, բեդվին տղայի՝ Մուհամեդ Գայլի խոսքերով.

«1945 թվին ես և իմ երկու հովիվ ընկերները քշում էինք մեր հոտերը Հրեական անապատով: Գիշերեցինք անապատում: Ինչպես որ ընդունված է, մեզանից յուրաքանչյուրը երեկոյան հաշվում էր իր հոտը: Ես երկու օր շարունակ չըհաշվեցի իմ հոտը: Ու երբ երրորդ օրը հաշվեցի, տեսա, որ մի այծ պակասում է: Ուղեկիցներիս ասացի՝ հոտս թողնում եմ ձեզ մոտ, ես գնում եմ կորած այծը որոնելու:

Ստիպված եղա թե՛ լեռները բարձրանալ, թե՛ հովիտները իջնել: Այդպես շատ հեռացա մյուս երկու հովիվներից ու թափառելով մոտեցա մի քարանձավի, որի մուտքը ջրհորի նման վերևից էր բացվում: Մտածեցի, որ այծը գուցե ընկել է քարանձավի մեջ: Ամեն անգամ, երբ քարը գցում էի քարանձավի մեջ, փշրվող կավե անոթի ձայնի նման ձայն էր գալիս: Ես չգիտեի, թե դա ինչ ձայն է ու որոշեցի իմանալ, թե ինչ կա քարանձավի մեջ: Մտա քարանձավ ու գտա կավե անոթներ: Մտածեցի, որ կարող է պատահել դրանց մեջ գանձ լինի պահված ու ձեռքիս մահակով սկսեցի ջարդել դրանք: Բայց իմ ջարդած առաջին ինը անոթի մեջ գտա միայն կարմիր գույնի մանր սերմեր և ուրիշ ոչինչ: Իսկ երբ ջարդեցի տասներորդ անոթը, որը ամենափոքրն էր. նրա մեջ գտա մի քանի խզբզված ոլորած կաշի: Սկզբի ջարդած անոթները ծածկըված էին կափարիչներով, բայց կնքված չէին, մինչդեռ փոքր անոթի կափարիչը կնքված էր կավի նմանվող բանով:

Ես չգիտեի, թե ինչ անեմ գտածս կաշիները: Վերջապես հիշեցի, որ ես ու իմ ընկերները տրեխների կապիչներ չունենք ու ինքս ինձ ասացի. «Արի դրանք վերցնեմ»: Կաշին փաթաթեցի թիկնոցի մեջ, գցեցի շալակս ու ճանապարհ ընկա: Երբ վերադարձա ընկերներիս մոտ, ես նրանց ցույց տվեցի գտածներս ու ամենքին մի կտոր կաշի տվեցի, որպեսզի նրանք կարկատեն իրենց կոշիկները: Իսկ այծը այդպես էլ չգտա: Հետո, ուշ երեկոյան մենք վերադարձանք անապատի այն տեղը, որտեղ մենք կանգ էինք առել: Կաշին ես պահեցի ինձ մոտ ու երբ տուն վերադարձանք, ես այն դրեցի կաշվե պարկի մեջ ու կախեցի անկյունում: Պարկը երկու տարի կախված մնաց, մինչև որ մի օր քեռիս եկավ մեր տուն և ասաց. «Տանեմ ցույց տամ դրանք հին իրեր առնողին, մեկ էլ տեսար մի բան տվեց»:

Ահա մի ուրիշ դեպք նույն վայրերից, որի մասին տեղեկացնում է եպիսկոպոս Տիմոֆեյոսի նամակը. «Վերջերս ես իմացա քրիստոնեական հավատ ընդունած հրեաներից, որ մոտավորապես տասը տարի առաջ Երիքովի մոտ, ժայռի մեջ փորած քարանձավում գտնվել են մի շարք գրքեր: Այդ հրեաների պատմելով մի արաբ որսորդի շուն որսի ժամանակ թռչում է քարանձավի մեջ և չի կարողանում դուրս գալ: Շան տերը մտնում է շան ետևից, և նրա առջև բացվում է քարանձավը, որի պատերի խորշերի մեջ պահված էին շատ գրքեր: Երուսաղեմ վերադառնալով արաբը կատարվածի մասին պատմում է հրեաներին, որոնցից շատերը շտապում են այնտեղ, ուր գտնում են աստվածաշնչային և ուրիշ գրքեր»:

Կումրանյան հրեական համայնքի քարանձավներում կատարված հայտնագործությունները լույս են սփռում նաև Հայաստանի քարայր-գաղտնարանների վրա: Կումրանյան քարայրների ձեռագրերը համարյա միշտ պահված են եղել անոթների մեջ: Կումրանյան ձեռագրերի ժամանակներում (մինչև մեր թվարկության ութերորդ դարը) հայտնագործված չէր գիրք կազմելու արհեստը: Ձեռագրերը պարզապես ոլորվում էին գլանների ձևով և պահվում կավե երկարավուն անոթների մեջ:

Այս փաստը հուշում է, որ մեզ մոտ, նախամաշտոցյան Հայաստանում գիր և գրականություն եթե եղել է, ապա այդ խռովահույզ ժամանակներում պետք է, որ եղած գրքերը թաքցվեին անմատչելի քարայրներում:

*(Շարունակելի)*

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

# Նշանավոր ասպետն ու իր հետևորդները

(Սերվանտեսյան ընթերցումներ)



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Նշանավոր ասպետի մասին գրքում ասվում է, թե նա այնքան տարվեց ընթերցանությամբ, որ կարդում էր լույսով ու առանց լույսի, գիշեր ու ցերեկ, այնքան, մինչև նրա ուղեղը սկսեց չորանալ, և նա ի վերջո խելառ ցնդեց: Կարդացածից միայն այն էր ըմբռնել, որ հարկ է վերականգնել ասպետների մոռացված կարգը, դառնալ թափառական ասպետ և վերացնել ամեն անարդարություն, որ կա երկրի վրա:

Երբ արդեն պատրաստ էին ձին ու զենքերը, նա սկսեց մի հարմար զինակիր փնտրել: Հենց նույն գյուղում կար մի բարի, աշխատասեր և ուրիշ շատ արժանիքներով մարդ: Ասպետն այնքան պատմեց, հորդորեց նրան, բաներ խոստացավ, ապագա արկածներով հրապուրեց նրան, որ գյուղացին համաձայնեց թողնել իր տունը, ընտանիքը և միանալ նրան: Պետք է ասել, որ սույն գյուղացին էլ, ինչպես հետո պարզվեց, յուրատեսակ ծայր պակաս մարդ էր, չնայած նա այդպես էլ չկորցրեց սևին սև և քարին քար ասելու հատկությունը, որ վաղուց չուներ ասպետը:

Հենց առաջին զրույցի ժամանակ ասպետը նրան ասաց, որ կարող է այնպես

պատահել, որ ինքը որևէ կղզի նվաճի և իր զինակրին կառավարիչ նշանակի, թափառական ասպետների կյանքում իր զինակրին վարձահատույց լինելու շատ սովորական ձևերից մեկն է դա:

— Տեսեք, հա՛,— ասաց գյուղացին,— ձերդ ողորմածություն, պարոն թափառական ասպետ, չմոռանաք ձեր խոստումը կղզու մասին: Ինչքան մեծ կղզի լինի, ոչինչ, ես կարող եմ ղեկավարել:

Դրան ասպետը պատասխանեց.

— Առաջներում թափառական ասպետները երբեք անվարձահատույց չէին թողնում իրենց զինակիրներին, որևէ կղզի կամ թագավորություն գրավելով, նրանց էին հանձնում նվաճածը և զինակիրն ապրում էր փառավոր ու արքայավայել: Ես թերևս ավելին կանեմ, շատ հավանական է, որ ես միանգամից նվաճեմ մի քանի թագավորություն և քեզ թողնեմ ընտրելու, որովհետև ինչպես հայտնի է, թագավորությունները էլ տարբեր են լինում:

— Ինչքան մեծ, այնքան լավ,— ասաց զինակիրը:

—Անշուշտ:

— Ուրեմն, եթե ձերդ գերազանցության շնորհիվ թագավոր դառնամ, իմ կինն էլ, կնշանակի, թագուհի կդառնա, ժառանգներս էլ թագաժառանգնե՞ր:

— Անկասկած: Ես նրան ազնվական տիկին կդարձնեմ, դարմանների միջից կհանեմ և ամպհովանու տակ կնստեցնեմ՝ փափուկ բարձերի վրա:

— Համաձայն եմ, տեր իմ,— ասաց զինակիրը:— Ո՞ր մի գյուղացին չի երազում թագավոր դառնալ: Բայց տեսեք, հա՛, չմոռանաք ձեր խոստումը:

— Դու դեռ տհաս ես ասպետական գործերում, —ասաց ասպետը,— և չգիտես, որ ասպետները չեն խոստանում այնպիսի բաներ, որ հնարավոր չլինի նրվաճել իրենց սուսերի ու խիզախության ուժով:

Այսպիսի խոստումներով գյուղացուն խելքից հանեց ու մի օր, առավոտյան ծեգին, ասպետը հեծավ իր ձին, զինակիրն իր ավանակը, և նրանք ճանապարհ ընկան՝ ասպետը իր արկածները որոնելու, իսկ զինակիրը խոստացած թագավորությունը կամ կղզին ստանալու: Թե ինչեր արին նրանք, այժմ ամբողջ աշխարհին է հայտնի:

Մի տեղ ոչխարների հոտ տեսնելով ու թշնամու զորք կարծելով՝ ասպետը վրա ընկավ ու սկսեց կոտորել: Ինչքան զինակիրը գոռաց ու ճչաց, թե դրանք մարդիկ չեն, այլ ոչխարներ, ասպետը նրան ուշադրության չարժանացրեց ու կոտորեց այնքան, մինչև հովիվները նրան իր ձիուց մահակներով ցած նետեցին, ապա առան սպանված ոչխարները ու չքացան:

Հետո նրանք հողմաղացներ տեսան, և ասպետը դրանց կերպարանափոխված հրեշների տեղ դնելով՝ մարտի բռնվեց ու դարձյալ ջախջախված, ձիուց ընկավ գետնին: Զինակիրը իզուր փորձեց բացատրել, որ դրանք հրեշներ չեն և երբեք էլ չեն եղել, ինքն էլ քանի անգամ իր ավանակով աղուն է բերել այստեղ ու երբեք մտքով չի անցել, որ հրեշներն են իր գարին ալյուր դարձնում:

Ապա նրանք, ինչպես հայտնի է, հյուրընկալվեցին ինչ-որ իջևանատան և այդ սովորական իջևանատունը կախարդված ամրոցի տեղ դնելով՝ ասպետն այստեղ շատ զավեշտական արկածներ ունեցավ, ծիծաղեցին բոլորը, բացի ասպետից և իր զինակրից: Այստեղ նա նիզակով հարվածեց ջորեպանի գլխին և մարդը քիչ մնաց այն աշխարհն ընկներ: Այդ ջորեպանին նա ասպետի տեղ էր դրել, և սա հանդգնել էր հակաճառել նրան: Պետք է ասել, որ թափառող ասպետը պատրաստ էր մենամարտի հրավիրել ամեն մեկին, ով կհամարձակվեր չհամաձայնել նրա հետ և հակաճառել: Նա տանել չէր կարող սեփական կարծիք ունեցող մարդկանց: Եթե չէին համաձայնում նրա ասածներին՝ բոլորին թշնամի էր համարում և պատրաստ էր տեղնուտեղը սպանել նրանց:

Նույն իջևանատանը գիշերում էր նաև մի ուսանող, որը մի գավաթ գինի էր խմել, մի պնակ խաշած ոսպ էր կերել և չգիտեր ինչպես պետք է վճարի այդ ամենի համար: Իջևանատերն էլ գլխի էր, որ դրա գրպանը դատարկ է, աչքը նրանից չէր հեռացնում , որպեսզի չճողոպրի առանց վճարելու:

Առավոտյան իջևանատերը մեկնող ասպետին և նրա զինակրին հաշիվ ներկայացրեց.

— Ինչ եղավ՝ եղավ,— ասաց նա գրլուխը քորելով,— անհագին ապրանք ջարդեցիք, ջորեպանիս գլուխը ջարդեցիք, ոչինչ: Բայց ձերդ գերազանցությունը պետք է վճարի իջևանատանս գիշերելու վարձը, այսինքն ընթրիքի և երկու անկողնու գինը, ինչպես նաև ձիու և ավանակի կերի ու դարմանի արժեքը:

Ասպետը, որ արդեն ձիու վրա էր և պատրաստվում էր մեկնել, վերևից ասաց.

— Ես չեմ կարող փոխել թափառող ասպետների կանոնադրությունը: Ինչպես հայտնի է և դա գրքերում գրված է, նրանք գիշերելու կամ որևէ ծառայության համար չէին վճարում երբեք: Ամենուր, որտեղ էլ իջևանում էին թափառող ասպետները, լավագույն ընդունելության էին արժանանում և այն էլ առանց վճարի, ի տրիտուր այն նեղությունների, որ նրանք կրում են զոր ու գիշեր արկածներ որոնելիս, ենթարկելով իրենց անձն ամեն վտանգների ու արհավիրքների՝ ընչազուրկներին օգնելիս, անարդարությունը պատժելիս ու երկրից չարիքն իսպառ արմատահան անելու ասպետական մեծ գործերում:

Իջևանատերը, որ նման բաներից հեռու էր, ասաց.

—Այդ ասածներիցդ իմ խելքը ոչինչ չի կտրում, վճարեք ինձ, ինչպես ամեն մարդ, որ մտնում է իմ իջևանատուն և վայելում է գիշերելու հանգիստը, ճաշակում մատուցած ուտելիքները:

— Ժողովուրդը,— ասաց ասպետը,— միշտ և ամենուր պարտավոր է հոգալ թափառող ասպետների բոլոր հոգսերը, քանզի նրանք ելել են նրա արդար դատը պաշտպանելու:

— Եթե դուք արդարություն եք որոնում և պատժում եք անարդարությունը, ապա ինքներդ ևս արդար եղեք,— ասաց իջևանատերը,— վճարեք գիշերավարձը:

Ասպետն ի վերջո զայրացավ և հայհոյելով իջևանատիրոջը, խթանեց իր ձին ու հեռացավ:

Այն ժամանակ իջևանատերը իր հաշիվը ներկայացրեց նրա ծառային՝ զինակրին, որը նույնպես տեղավորվել էր իր ավանակի վրա և պատրաստվում էր մեկնել:

— Թափառական ասպետի զինակիրը լինելով,— ասաց նա,— ես ենթարկվում եմ նույն կանոնադրությանը: Մենք պարտավոր չենք որևէ մեկին որևէ բան վճարելու, որովհետև մենք պաշտպանում ենք խեղճ ժողովրդի արդարության գործը: Ասպետների մասին որևէ գրքում կարդացե՞լ եք, որ նրանք վճարեն իջևանատանը գիշերելու, ուտելիքի և նման բաների համար:

Սա էլ քշեց իր ավանակը, հեռացավ: Իջևանատերը, որ կատաղել էր, գոռաց նրանց ետևից.

— Պարոն թափառական ասպետ կամ պարոն ավազա՛կ, արդարություն փնտրող գող, խեղճերին հասնող խաբեբա, չփորձես կրկին անցնել այս կողմերով, այլապես ամենաարդար դատը, որ կա աշխարհում, ես ինքս իմ ձեռքերով կկատարեմ... Մի՞թե տեսել եք ավելի խաբեբա ու անամոթ մարդիկ, որքան արդարություն փնտրող այս թափառական ասպետն ու իր զինակիրը:

Օգտվելով առիթից՝ ուսանողը փորձեց թաքուն հոլովրել, բայց իջևանատերը նկատեց նրան և մոտ վազելով՝ բռնեց օձիքը.

— Երդվում եմ հորս ոսկորներով ու մորս կյանքով, որ դու կվճարես մի գավաթ գինու, մի ափսե խաշած ոսպի ու գիշերելու արժեքը, այլապես կամ ծեծելով կսպանեմ քեզ, կամ կհանձնեմ ոստիկանների ձեռքը, որն ավելի վատ է մեռնելուց:

Նա իր ողջ բարկությունը թափեց աղքատ ուսանողի վրա, զարհուրելի ծեծեց նրան, կիսամեռ՝ կիսաողջ նետեց իջևանատան բակը: Այստեղից էլ ոստիկանները եկան ու նրան տարան բանտ:

Ճանապարհին զինակիրը հարցրեց ասպետին, թե արդյոք ջրեպանին ծեծելու և նրա գլուխը ջարդելու համար ոստիկանությունն իրենց բանտ չի՞ նետի: Ասպետը պատասխանեց նրան, ինչպես գրված է գրքում.

— Այդ որտե՞ղ ես դու տեսել կամ կարդացել, որ թափառական ասպետին մարտի մեջ նետվելու համար դատ հասնի:

— Արյունահեղության համար չգիտեմ, տեր իմ, ես երբեք այդ գործով չեմ զբաղվել, բայց ամեն մի գյուղացու ստույգ հայտնի է, որ տուրուդմփոցի համար մեղավորը թիարան է ուղարկվում: Չափազանց խիստ են տերության օրենքները:

— Մի վշտանա, բարեկամս,— ասաց ասպետը,— ես քեզ ոչ միայն թիարանից, այլև դժոխքից էլ կազատեմ՝ բանի դու ինձ հետ ես և իմ զինակիրը:

— Հա, բայց շատ մեղքս տվեց ջրեպանը, որն անմեղ էր և ադդիսի ծեծ կերավ: Արյունն առվակներով հոսում էր նրա գլխից, եթե չմիջամտեիք, դուք, տեր իմ, թերևս սպանեիք նրան:

Դրան ասպետն այսպես պատասխանեց.

— Արդարության գործը սպիտակ ձեռնոցներով չեն անում: Եվ թող իմ մասին ոչ հիմա, ոչ հետո, ոչ ոք չասի, թե մեկնումեկի արցունքը ու աղաչանքը ինձ ետ պահեցին իմ ասպետական պարտքը կատարելուց:



— Թող ձեր ասածը լինի,— ասաց զինակիրը։— Միայն թե ինչքան հնարավոր է շուտ նվաճեք խոստացած կղզին։

— Ես արդեն ասել եմ քեզ, բարեկամս, որ դրա համար հանգիստ լինես։ Կղզի լինի, թե թագավորություն, առջևում ինչ-որ տեղ սպասում է մեզ։ Այսպես է թափառական ասպետի ճակատագիրը. այսօր նա աշխարհի ամենաթշվառ էակն է, իսկ վաղը, մեկ էլ տեսար, իր զինակրի համար նվաճեց որևէ թագավորություն։

— Իսկ ի՞նքը։

— Ո՞վ՝ ինքը։

— Իսկ թափառական ասպե՞տը։

— Իմացած լինես, բարեկամս, որ թափառական ասպետին ոչինչ պետք չէ, նա հենց նրա համար է թափառում, որ շարունակ թափառի։ Ամենուր նա պիտի հասնի տկարներին, զրկվածներին, կեղեքվածներին, նրանց վրեժը պիտի լուծի և պատժի ստորությունը։

Այսպես զրուցելով և զանազան ու բազմապիսի արկածներից հետո՝ մի օր էլ ճանապարհին շղթայակապ մարդկանց մի բազմություն տեսան։ Խումբը ուղեկցում էր ձիավոր ու զինված հետիոտների փոքրիկ մի ջոկատ։

Զինակիրն ասաց, որ դրանք տաժանակիր աշխատանքի դատապարտվածների մի խումբ է, որոնց հավանաբար տանում են թիարան։

— Ասել է թե՝ այդ մարդկանց տանում են հակառակ իրենց կամքի,— ասաց ասպետը։— Ուրեմն, ես պետք է կատարեմ ասպետական իմ պարտքը, պիտի պատժեմ բռնությունը և ազատեմ բռնության զոհերին։

— Տեր իմ, ես ասպետական գործերից իհարկե ոչինչ չեմ հասկանում, բայց շատ է պատահել, որ անարդարությունը պատժելու տեղ՝ արդարությունն եք պատժել։ Այս մարդիկ իրենց գործած ոճիրների համար պետք է իրենց արդար պատիժը կրեն, արդարության ձեռքն արդեն պատժել է նրանց։ Հիմա դուք կասեք՝ լռիր, ոչինչ չես հասկանում... Բայց մի խոսք էլ ավելացնեմ ու լռեմ. ամեն խեղճ չէ, որ արդար է, ամեն ծեծվող չէ, որ արժանի չէ ծեծի, ամեն թույլ չէ, որ արժանի է պաշտպանության...

Ասպետը խոժոռ նայեց նրան և զինակիրն իսկույն լռեց, նա արդեն գիտեր, որ իր տերն ամենից շատ չէր սիրում, երբ նրան առարկում էին, մանավանդ ասպետության, արդարության ու անարդարու-

թյան հարցերում։ Նա այնպես վստահ էր իր կատարյալ իրավացիության վրա, որ աշխարհում ոչ մի ուժ չկար, որ նրան հակառակն ապացուցեր, և ինչ էլ աներ, ում վրա էլ ձեռք բարձրացներ և ինչ դատաստան էլ կատարեր՝ կատարելապես համոզված էր, որ դա իր իրավունքն է, ինքն է միակ արդար ու արդարադատ մարդը։ Նա կամովի ստանձնել էր այս աշխարհի դատավորի դերը և իր կոչումը տեսնում էր միայն չարը պատժելու մեջ։ Նա ելել էր այս աշխարհի չարիքը վերացնելու, նա ատում էր ամեն կարգի բռնությունները, և սուրը ձեռքին բռնությամբ պիտի վերացներ բռնությունը, եթե պետք լիներ անգամ դրա համար ամբողջ աշխարհը քարուքանդ անել, հողին հավասարեցնել։

Ջինակիրն այլևս ոչինչ չասաց, գիտեր, որ իր տերը եթե մի բան է մտցրել գլուխը՝ նրան ետ պահելն անհնար է։

Նրանք կալանավորներին հասան այն պահին, երբ հսկիչները նրանց մի փոքր դադար էին տվել և նրանք, շղթաները հավաքելով, նստոտել էին ծառի ստվերում։

Ասպետը, որ հարցասեր մարդ էր, պահակազորի պետին դիմելով, ասաց, որ կցանկանար այս դժբախտ մարդկանց հետ զրուցել և իմանալ, թե ո՞րն է նրանց հանցանքը։

Ինչպես հայտնի է, գողերը, ոճրագործները և ավազակները մինչև հանցանքում բռնվելը թաքցնում են իրենց արարքները, չքմեղանում, բայց բռնվելուց, մանավանդ դատվելուց հետո, սկսում են ազատորեն պատմել, անգամ լկտիանալով՝ չափազանցացնում են իրենց մեղքերը, հպարտանում դրանցով։

Ոճրագործ աշխարհի մարդիկ շատ շուտ են ճանաչում միամիտներին, նրանք իսկույն գլխի ընկան՝ ով է կանգնած իրենց դեմ։ Նրանցից մեկը ասպետին ասաց, որ թիապարտության է դատապարտվել անմեղ սիրո համար։

— Ինչպե՞ս թե,— ապշեց մեծ սիրահարը։— Եթե դրա համար դատ է հասնում, ապա ես թերևս աշխարհի ամենամեծ և ամենաառաջին հանցագործն եմ։

Կալանավորները ծիծաղեցին, քրքջացին, խրխնջացին, իսկ աշխարհի ամենածիծաղելի մարդն, ավա՜ղ, հումորից կատարելապես զուրկ էր, բան չհասկացավ։ Պահակազորի պետն ասաց, որ այդ սրիկան սիրահարված էր սպիտակեղենով լիքը մի կողովի, որն այնպես էր սեղմել կրծքին, որ արդարության ձեռքը հազիվ կարողացավ նրանից պոկել ուրիշի ունեցվածքը։

— Եվ այդ սիրո համար,— ավելացրեց գողը,— ինձ շնորհավորեցին հազար մտրակի հարվածով և երեք տարվա թիարանով։

Մյուսն ասաց, որ դատապարտված է երգելու համար, իսկ բանտային լեզվով դա նշանակում է, որ նա հարցաքննության ժամանակ չի դիմացել խոշտանգումներին և խոստովանել է իր մեղքը։

Մեկ ուրիշն էլ ասաց.

— Պարոն թափառական ասպետ, դուք պետք է որ հիշեք ինձ։ Այն չարաբաստիկ իջևանատանը, ուր դուք ջարդուխուրդ արիք ջորեպանին, կերաք ու վայելեցիք ձեզ մատուցած ճաշերը, ապա առավոտյան առանց վճարի հանգիստ ու թեթև հեռացաք, այդ նույն իջևանատանը ես ընդամենը մի բաժակ գինի էի խմել ու մի ափսե խաշած ոսպ էի կերել, բայց վճարել չկարողացա։ Ես մի աղքատ ուսանող էի, իմ գրպանում դրամ չկար։ Իջևանատերն էլ իր ծառաների հետ ինձ շան ծեծ տվին, ապա կիսամեռ հանձնեցին ոստիկանությանը։ Իսկ հիմա ես հինգ տարով դատապարտված եմ թիապարտության։

Բոլորի հետ հերթով զրուցելուց հետո, մեր ասպետը պահակազորի պետին դիմելով, ասաց.

— Այս դժբախտ մարդկանց պատմություններից ես հասկացա, որ նրանք բոլորն էլ զրկված, չքավոր մարդիկ են և իրենց մեղքը չէ, որ կարիքի դրդումով ձեռք են մեկնել ուրիշի ունեցվածքին։ Ուստի ես առաջարկում եմ ձեզ, որ ձեր բարի կամքով ազատ արձակեք այս խեղճ մարդկանց, որպեսզի վերադառնան իրենց տները, որովհետև ամեն մարդ մի տեղ սպասող ունի՝ մայր, քույր, եղբայր, երեխա կամ սիրեցյալ կին...

Վերջին խոսքերի հետ ասպետի աչքերն այնպիսի տխրությամբ լցվեցին, որ կալանավորները ծիծաղից ուղղակի ըսկըսեցին թավալվել գետնի վրա՝ զրնգացնելով իրենց ծանր շղթաները։

Պահակազորի պետը վերջապես համբերությունից դուրս եկավ։

— Ի՞նչ եք զառանցում,— ասաց նա,— գնացեք ձեր ճանապարհով, պարոն խեղկատակ ասպետ։ Եթե ամեն մարդ կարիքի բերումով ձեռք մեկնի ուրիշի ունեց-

վածքին և անպատիժ մնա, այս երկրում չի գտնվի մի մարդ, որ կարիքի դրդումով չթալանի իր հարևանին:

Ասպետր տեսավ, որ իր բարի խոսքերը տեղ չհասան:

— Ինչ արած,— ասաց նա հառաչելով և թուրը մերկացնելով,— կամոքն աստծո, ես հարում եմ ազնիվ ասպետական ուխտին, որ պաշտպան կանգնեմ այս աշխարհի զրկվածներին: Պաշտպանվեցեք, թշվառական:

Պահակազորի պետր չէր հասկանում, ինչ է կատարվում, արհամարհանքի ժպիտը դեռ դեմքին էր և չհասցրեց անգամ ուշքի գալ, երբ ասպետր խիզախորեն հարձակվեց նրա վրա և հենց առաջին հարվածով երկար ժամանակով պառկեցրեց նրան ծառի տակ: Այս գործն ավարտած համարելով, նա իր հարձակումն ուղղեց մյուսների վրա, իսկ կալանավորները այս անսպասելի ու պատեհ իրարանցումից օգտվելով, հենց իրենց ձեռքի շղթաները զենքի տեղ օգտագործելով՝ շարունակեցին արդեն սկսված ջարդը և շուտով բոլոր հսկիչներին փախցրին: Ապա սկսեցին քարերով փշրել շղթաները և քիչ անց նրանք բոլորն էլ ազատ էին կապանքներից:

Մեր ասպետն ուներ նույնքան իրական մի սիրուհի, որքան իրական էին նրա բոլոր նկրտումները: Երբ նա ձերբազատված ավազակախմբին ասաց, որ նրանք, ի նշան երախտագիտության և ըստ ասպետական ուխտի անխախտ սովորության, պարտավոր են մեկնել նրա սիրուհու մոտ և պատմել նրան իր սխրանքների մասին, ավազակները սկսեցին ծիծաղել, քրքջալ նրա երեսին, խուտուտ տալ և գլխին հարվածելով՝ ծաղրել նրան:

Ասպետր շատ արագ էր փաղաքուշ և վերամբարձ խոսքերից անցնում հայհոյանքների, իսկ ավազակներն էլ շատ արագ էին խոսքից անցնում գործի, այնպիսի մի քարծեծ տվին ասպետին և նրա ձիանկրին, որ սրանք ուշակորույս փռվեցին գետնին: Ավազակներն էլ իրենց ազատ կյանքի առաջին քայլերը սկսեցին նրանով, որ թալանեցին իրենց ազատարարին ու նրա ձիանկրին, հանեցին անգամ ասպետի բանկոնը, գուլպաներն էլ պիտի հանեին, բայց անհեթեթ զրահները խանգարում էին, տարան նաև ձիանկրի կապան: Երբ վերցնելու այլևս ոչինչ չմնաց՝ արագ ցրվեցին չորս կողմ:

(Շարունակելի)

**ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ**



Տաս կտրիճ եղբայր՝ նույն հորից-մորից,
Տարբեր հասակի, բայց հասակակից,
Հինգը՝ աջ ձեռքին, մյուս հինգը՝ ձախ,
Ապրում-գործում են հաշտ ու համերաշխ:

Սա Բթամատն է՝ խիզախ բերդապահ,
Որ պինդ պահում է և՛ թուր, և՛ թե ջահ,
Սա Ցուցամատն է՝ հպարտ, անողոք,
Չի փոխի նրա վճիռը ոչ ոք:

Սա Միջնամատն է՝ բոլորից երկար,
Աշխատանքի մեջ ճարպիկ ու ճարտար:
Սա Մատնեմատն է՝ մի քիչ պճնամոլ:
Բայց հավատարիմ լուծընկեր ամոլ:

Սա էլ Ճկույթը՝
Օրպակաս ճուտը:

Տաս կտրիճ եղբայր, որ յույս արարում,
Անհուն ծովերում նավեր են վարում,
Ինչպե՛ս են պարում ստեղնաշարին,
Շունչ տալիս անշունչ քարին ու ժայռին:

Քարի բեկորը դարձնում նուրբ քանդակ,
Ուղիներ փորում խորունկ գետնի տակ,
Հերկում են հողը, ցանում ու հնձում,
Միասին տքնում, միասին ցնծում...

Տաս կտրիճ եղբայր, տասը կտրիճ այր
Կարող են հալվել մի ծաղկի սիրուց,
Բայց և թշնամու գլխին անիծյալ
Կարող են դառնալ ահարկու բռունցք...



# ԵՐԱԽՏԱՊԱՐՏ ԵՄ ԻՄ ՃԱԿԱՏԱԳՐԻՆ

**ՄԱՐԻԱՄ ԱՍԼԱՄԱԶՅԱՆ**
**(ՀՍՍՀ ժողովրդական նկարչուհի)**

Յուրաքանչյուր արվեստագետ պարտավոր է նախ և առաջ լինել իր ապրած ժամանակի քաղաքացին, կոչված է արվեստի լեզվով խոսելու իր երկրի ու ժողովրդի հետ, լինել նրա ուրախությունների ու հոգսերի թարգմանը:

Ահա թե ինչու, ես ձեզ՝ «Պիոների» ընթերցողներիդ, կոչ եմ անում շատ սիրել մեր գեղեցիկ Հայաստան աշխարհը, մեր ստեղծագործ ժողովրդին, վեհաշուք Արարատը, ծաղկափթիթ լեռներն ու խոխոջուն գետակները, մեր կապույտ, անսահման կապույտ երկինքը, գեղունեշ բարդիները... ամենայն գեղեցիկը, որ շրջապատում է մեզ և մեր անկապտելի հարստությունն է:

Կամենում եմ՝ ճիշտ ընտրեք ձեր մասնագիտությունը և լիովին նվիրվեք նրան, քանզի միայն անմնացորդ նվիրումն է գրավականը բոլոր հաջողությունների:

Պետք չէ աջ ու ձախ շռայլվել, ընտրեք մեն մի նվիրական ճանապարհ և հաստատուն ու աներեր քայլեք մինչև վերջ՝ չշեղվելով նպատակից, և չնահանջել՝ չզիջել ոչ ոքի այն, ինչը իրավամբ քեզ է պատկանում:

Ես երջանիկ եմ, որ կարողացել եմ ճիշտ ընտրել իմ ուղին: Եթե բախտ վիճակվեր ինձ նորից սկսելու կյանքս, կրկին կընտրեի նըկարչի դժվարին ճանապարհը և կրկին ողջ ուժերս ու եռանդս կնվիրաբերեի արվեստի զոհասեղանին: Ես շատ եմ նկարում, և չեմ պատկերացնում կյանքիս թեկուզ մեկ օրը առանց աշխատանքի: Նկարում եմ այն, ինչը հուզում և ուրախություն է պատճառում ինձ՝ յուրաքանչյուր կտավում դնելով անհանգիստ ոգուս մի թրթիռը: Եվ այս թանկագին զգացողության համար երախտապարտ եմ ճակատագրին:

Իմ ստեղծագործությունները հիմնականում նվիրված են Հայաստանին ու հայ ժողովրդին, հայկական անկրկնելի բնապատկերին, նրա արևահամ մրգերին: Դրանք ինձ համար կենդանի, շնչող գոյություններ են, որոնց միջոցով հաղորդում եմ իմ մտքերն ու զգացումները:

Մեր երկրի և արտասահմանյան շուրջ 50 թանգարաններում կախված են իմ կտավները: Նկարչի գործունեության հանրագումարը նրա անհատական ցուցահանդեսներն են: Քանիցս ցուցադրվել եմ Մոսկվայում, Լենինգրադում, Միության տարբեր քաղաքներում, արտասահմանյան երկրներում: Իմ նկարները «շրջել են» գրեթե բոլոր միջօրեականներով՝ Իտալիա, Ֆրանսիա, ԱՄՆ, Անգլիա, Հոլանդիա, Չեխոսլովակիա, Հունգարիա... Սակայն իմ 28 անհատական ցուցահանդեսներից ինձ առանձնապես թանկ ու սիրելի են նրանք, որոնք կազմակերպվել են իմ հայրենիքում և որոնք ինձ հնարավորություն են տվել հանդիպելու հայ արվեստասերների հետ: Իմ առաջին մասնակցությունը համամիութենական ցուցահանդեսին, եղել է 1927 թվականին, երբ Երևանի գեղարվեստաարդյունաբերական տեխնիկումի ուսանող էի: Դեռ այն ժամանակ ես ոտքով շրջեցի Հայաստանի գյուղերն ու ավանները՝ մոտիկից ճանաչելու համար իմ երկիրն ու ժողովրդին: Եվ այդպես՝ 55 տարի, մինչև օրս:

Եղել եմ եվրոպական բազմաթիվ երկրներում, բայց իր ոգով և մշակույթով ինձ ավելի սրտամոտ է Արևելքը: Չորս անգամ այցելել եմ Հնդկաստան, երկու անգամ՝ Եգիպտոս, եղել եմ Չինաստանում, Ճապոնիայում, Ալժիրում, Փղոսկրի Ափում... և տասնյակ այլ երկրներում: Եվ այն ամենը, ինչ հուզել է ինձ այդ երկրներում, ինչը համահնչյուն է եղել իմ ստեղծագործությանը, վերարտադրել եմ կտավի վրա:

Ստեղծագործական յուրահատուկ հաշվետվություն էին Մոսկվայում կազմակերպված հնդկական և արաբական ուղևորություններիս արդյունք հանդիսացող երկու մեծ ցուցահանդեսները, որոնց համար արժանացա Ջ. Ներուի և Ջ. Աբդուլ Նասերի անվան մրցանակներին: Իմ երկարատև կյանքի ընթացքում բազմաթիվ հանդիպումներ եմ ունեցել հայ և օտարազգի նշանավոր մարդկանց հետ՝ Ա. Բակունց, Ե. Չարենց, Ավ. Իսահակյան, Մ. Սարյան, Վ. Փափազյան, Ա. Խաչատրյան, Ռ. Սիմոնով, Լ. Շահումյան, Կ. Հալաբյան, Հ. Բաղրամյան, Ա. Միկոյան... Բոլորին չես թվարկի: Անմոռաց են հանդիպումներս Ն. Կրուպսկայայի, Ի. Գանդիի և Դոլորես Իբարրուրիի հետ: Բայց որտեղ էլ որ եղել եմ, ում հետ էլ որ հանդիպել եմ, միշտ մնացել եմ իմ ժողովրդի արժանի դուստրը և հպարտ եմ իմ ժողովրդով ու իմ ծագմամբ:

# ԱՆԻ



Անի՛. դու չես լոկ հողեղեն մի գանձ.
Դո՛ւ, ինքդ քո ոգին—մի՛ ողջ ժողովուրդ.
Ամեն ձև այստեղ ոճ է, գեղազանց,
Ամեն ինչ այստեղ— իմաստ ու խորհո՛ւրդ:

ԱՎ. ԻՍԱՀԱԿՅԱՆ



Բանաստեղծական այս քաղաքի մասին գրվել են բազմաթիվ գրքեր ու հոդվածներ, վեպեր ու պատմվածքներ, պոեմներ ու երգեր: Երևի հայոց ոչ մի մայրաքաղաք այդքան լավ չի ուսումնասիրվել, որքան Անին: Նրա մասին հիշատակություններ կան համարյա բոլոր հայ պատմիչների մոտ, նրա պատմության ուսումնասիրության համար անգնահատելի են Ն. Մառի, Թ. Թորամանյանի, Հ. Օրբելու կատարած պեղումներն ու չափագրությունները, շուրջ 250 վիմագիր արձանագրությունների վերծանումը: Այսօր յուրօրինակ սկզբնաղբյուրների նշանակություն են ձեռք բերել հայ և եվրոպացի ճանապարհորդների նոթերը նրա փառահեղ ու անկրկնելի ավերակների մասին:

Անին գտնվում է Շիրակում, ՀՍՍՀ Խարկով գյուղի դեմ-դիմաց, Ախուրյանի բարձրադիր աջ ափին: Այն իբրև բնակավայր առաջացել է անհիշելի ժամանակներում: Նրա անվան ծագումը գիտնականները կապում են Ստրաբոնի հիշատակած անենիա, անիանի ցեղախմբի կամ ժողովրդի անվան հետ, որը հնագույն ժամանակներում բնակություն է հաստատել այդ վայրերում: Այս ցեղի անվան հետ են կապվում նաև Հայաստանի մի քանի այլ բնակավայրեր ևս՝ Հանի, Անի-Կամախ և այլն:

Շիրակ գավառը, որտեղ գտնվում է Անին, Կամսարականներին էր տրված դեռևս 321 թվականին: Նրանք այստեղ կառուցում են պարիսպներ, իշխանանիստ ամրոց, եկեղեցի և այլ շինություններ: 8-րդ դարում Բագրատունիներին անցնելով, Անին վերաշինվում է, դառնում ժամանակի ամենանշանավոր բերդերից, որի

շուրջը արդեն ձևավորվել էր փոքրիկ բնակավայրը: Բագրատունիների թագավորության սկզբնական շրջանում Անին իր անառիկության շնորհիվ դարձել էր արքունի գանձարանը, որտեղ պահվում էր նրանց հարստության մի մասը: Այստեղ է Սմբատ Բագրատունին բանտարկում Աբխազաց ապստամբ թագավորին՝ Կոստանդինին: Այս շրջանում Անին արդեն բավականին բազմամարդ էր, այնտեղ կային բազմաթիվ կրպակ-խանութներ ու արհեստանոցներ:

Բագրատունի թագավորները երեք մայրաքաղաք փոխելուց հետո, վերջապես, 961 թ. թագավորության նոր կենտրոն ընտրեցին Անին: Աշոտ Ողորմածը հանդիսավորապես շահնշահ՝ արքայից-արքա, օծվելուց հետո իր նոր մայրաքաղաքի ապահովության համար ծավալում է մեծ շինարարություն՝ կառուցում է քաղաքի նոր պարիսպը, որ հետագայում կոչվեց Աշոտյան, ավելի է ճոխացնում Կամսարականներից մնացած պալատական համալիրը, անց է կացնում ջրմուղ և այլն: Անին ընդարձակվել է իր ժամանակի համար անսովոր արագությամբ: Մայրաքաղաք հռչակվելուց մեկ-երկու տասնամյակ անց արդեն այնքան էր տարածվել, որ քաղաքային պարիսպներից դուրս էր եկել և զբաղեցրել միջնաբերդից հյուսիս-արևելք ընկած ընդարձակ սարահարթի մեծ մասը: Եվ Սմբատ Երկրորդը անպաշտպան թաղամասը պարսպապատում է, կառուցում հսկա ամրություններ ու բուրգեր, անխորտակելի աշտարակներ: Սմբատյան կոչվող այս պաշտպանական համալիրը ձգվում էր շուրջ 2,5 կմ և օղակում էր քաղաքը: Այս պարիսպներին զուգահեռ փորվում է նաև շուրջ 500 մետր երկարության խանդակը, որը լցվելով ջրով, ստանում էր ոչ միայն պաշտպանական նշանակություն, այլև խաղաղ ժամանակներում ոռոգում էր քաղաքամերձ այգիներն ու բանջարանոցները: Մայրաքաղաք լինելու համեմատաբար կարճ ժամանակամիջոցում Անին աննախընթաց վերելք է ապրում, դառնում ժամանակի ամենանշանավոր քաղաքներից, որին պատմիչները «տիեզերահռչակ» են անվանում: Բարձր զարգացման են հասնում արհեստները՝ գործագործությունն ու ասեղնագործությունը, զինագործությունը, կավագործությունն ու ապակեգործությունը: Բագրատունիների շրջանում Հայաստանում արտաքին և ներքին առևտրի համար խիստ բարենպաստ պայմաններ էին ստեղծված: Քաղաքում կային հարյուրավոր կրպակներ, կամ ինչպես ժամանակակիցներն էին անվանում՝ կուղպակներ, ուր վաճառահանվում էին բազմապիսի և բազմազան ապրանքներ, իսկ քաղաքային շուկաներում աշխույժ առևտուր էին անում հեռավոր Չինաստանից ու Հնդկաստանից, հյուսիսի ու հարավի երկրներից եկած վաճառականները: Նրանց համար Անիում կառուցված էին բազմաթիվ հյուրանոցներ, պանդոկներ ու իջևանատներ: Վաճառաշահ այս քաղաքը դեպի իրեն էր ձգում երկրի մեծահարուստներին ու իշխաններին, արհեստավորներին ու չքավորներին: 11-րդ դարի սկզբին Անին արդեն իր ժամանակի ամենամարդաշատ քաղաքներից էր, նրա բնակչությունը անցնում էր հարյուր հազարից: Ի դեպ, սա բավականին մեծ թիվ է, եթե հիշենք, որ այս և հետագա շրջանների եվրոպական նշանավոր քաղաքներից շատերը Անիի համեմատ ոչ մեծ բնակավայրեր էին՝ օրինակ, Անգլիայի խոշորագույն քաղաքներ Լոնդոնն ու Բրիստոլը ունեին 7—8 հազար բնակիչ, Գերմանիայի նշանավոր քաղաքներից Մայնի Ֆրանկֆուրտը՝ 9, Լայպցիգը՝4, Նյուրենբերգը՝ շուրջ 20 հազար բնակիչ:

Լինելով գետերով շրջապատված և ժայռային թերակղզու վրա գտնվելով՝ Անին շատ խիտ է կառուցապատվել, այնպես որ, նրա



բնակիչները ստիպված էին օգտագործել շրջակա ձորերը, փորել բազմաթիվ քարանձավներ ու ավելի քան 30 քարափոր եկեղեցիներ:

Ժողովրդական ավանդություններում Անին անվանվել է հազար ու մեկ եկեղեցիների քաղաք: Ավանդությունն ավանդություն, բայց որ Անիում եղել են հարյուրավոր եկեղեցիներ՝ փաստ է: Արաբ աշխարհագիր Ալ-Ասիրի վկայությամբ այնտեղ կար ավելի քան 500 եկեղեցի: Դրանցից ամենանշանավորներն էին Գագկաշենը, Ապուղամրենց, Հովվի եկեղեցիները, ս. Փրկիչը և այլն:

Անիի «թանկագին ակը», ինչպես կոչել են շատերը, Տրդատ



ճարտարապետի կառուցած Մայր տաճարն է: Պակաս նշանավոր չեն նաև քաղաքի մյուս հուշարձանները, որոնց մասին տարբեր տարիներին Անի այցելած ճանապարհորդները հիացական խոսքեր են գրել: Նրանցից մեկը՝ Ա. Անդրեևը Առաքելոց եկեղեցու մասին գրել է. «Զարմանքից բերանս բաց մնաց— այդպիսի շքեղություն, այդպիսի պերճություն ու նրբագեղություն անիական ավերակներից ոչ մեկը չունի: Նկարչի վրձին է պետք, որպեսզի նկարի գեղարվեստական սյուները, վաղուց խաչաձևված կամարները, կամարաձև շքեղ առաստաղը և անհամեմատելի, անզուգական զարդաքանդակը: Իմ ուժերից վեր է նկարագրել այդ ավերակի գմայլելի պատկերը»:

Անիում եղել են դպրոցներ, արքունի գրադարանից բացի նաև այլ գրապահոցներ, նույնիսկ, թատրոն, որի հանդեսների և ներկայացումների մի մասը տեղի էին ունենում քաղաքի հրապարակներում:

Բայց անցյալի մեծագույն ու շքեղ քաղաքներից մեկը՝ Անին. այսօր ավերակների է վերածված: Իրար հաջորդած ասպատակիչներն ու բնության արհավիրքները, հատկապես աշխարհացունց երկրաշարժերը կործանել, ավերակների կույտերի են վերածել անցյալի հանճարեղ ճարտարապետների ու վարպետների շատ գլուխգործոցներ: Բայց, ինչպես Հայաստանի, այնպես էլ Անի մայրաքաղաքի համար ճակատագրական եղավ 1045 թ. Բագրատունյաց թագավորության անկումը:

Հովհաննես-Սմբատ թագավորից հետո գահ բարձրացավ նրա եղբորորդին՝ պատանի Գագիկը: Բյուզանդիան երկրին ու նրա մայրաքաղաքին տիրելու համար չորս անգամ մեծաքանակ զորքերով հարձակվեց Անիի վրա: Բայց անեցիները Վահրամ Պահլավունի քաջ սպարապետի գլխավորությամբ չորս անգամ էլ ջախջախեցին իրենցից թվով գերակշիռ թշնամուն: Տեսնելով, որ զենքի ուժով չի կարողանում ծունկի բերել անեցիներին, բյուզանդական կայսր Կոստանդին Մոնոմախը շատ սիրալիր նամակ է գրում Հայոց արքային, նրան բանակցությունների և բարեկամության դաշն կնքելու հրավիրում Կ. Պոլիս: Եվ ուխտադրժորեն, ինչպես դարեր առաջ արել էր մեկ ուրիշ նվաճող՝ Պարսից Շապուհ արքան, խաբեությամբ Անհուշ բերդում փակելով Արշակ Երկրորդին, այդպես էլ Մոնոմախը Կոստանդնուպոլսում է արգելափակում Գագիկ թագավորին՝ պահանջելով Անին ու թագավորությունը, փոխարենը նրան խոստանալով Մելետինեն և շրջակա գավառները: Հայոց պատանի արքան հրաժարվում է ստոր գործարքի մեջ մտնելուց: Բայց շուտով, Անիի բյուզանդամետ իշխանները կայսերն են ուղարկում քաղաքի 40 բանալիները: Հայոց արքային այլ բան չէր մնում, քան համաձայնվել փոխանակությանը: Սակայն Անիում. անտեղյակ այս ամենին, ապրում էին թագավորի վերադարձի հույսով, և երբ 1044 թ. բյուզանդական զորքը մոտեցավ ի վերջո նվաճելու քաղաքը, հայոց զորքն ու քաղաքի բնակիչները արյունահեղ ճակատամարտում ջախջախեցին թշնամուն և մոտիկ չթողնեցին Անիին: Հետո իմանում են կատարվածի մասին և 1045 թ. Անին հանձնվում է բյուզանդացիներին և շուրջ 160 տարի գոյատևած Բագրատունյաց թագավորությունը վերանում է: Այսպիսով Անին դադարում է երկրի մայրաքաղաք լինելուց, բայց դեռ շարունակում է մնալ Հայաստանի ամենամեծ ու ամենաշքեղ քաղաքը:

1064 թ. սելջուկ-թուրքերը գրավեցին Անին: Մի քանի տարի անց այն Գանձակի ամիրան նվիրեց թոռանը՝ Մանուչեին: Այնուհետև հայ-վրացական միացյալ զորքերը երեք անգամ ազատագրեցին Անին, բայց երեք անգամ էլ ստիպված վերադարձրին: Վերջապես, 1199-ին Անին ազատագրելով, Զաքարե Բ-ը դարձրեց իր ընդարձակ տիրույթների վարչական կենտրոնը: Քաղաքը կրկին վերաշինվեց, զարդարվեց նոր, պերճաշուք շինություններով, զարթոնք ապրեցին արվեստներն ու արհեստները, առևտուրն ու քաղաքային կյանքը: Բայց այս առաջընթացը կասեցրին մոնղոլական արշավանքները: Ազատատենչ անեցիները երկու անգամ ապստամբեցին, սակայն հաջողության չհասան: Մոնղոլական դժնի տիրապետության հետևանքով ավերված քաղաքից սկսվեց զանգվածային արտագաղթ դեպի հարևան երկրներ, Ղրիմ, այնտեղից էլ ավելի հեռու՝ Արևմտյան Եվրոպա:

14-րդ դարից հետո երկրաշարժներից և ասպատակիչներից կործանված քաղաքը վերածվեց սովորական բնակավայրի, իսկ 16-րդ դարի սկզբից բոլորովին անմարդաբնակ դարձավ:

ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ










# ՎԵՐԵԼՔ

Լույս է տեսել Պիոն Հակոբյանի «Վերելք» գիրքը: Այն հասցեագրված է դպրոցականներին: Գրքի առանձին գլուխները ներքուստ միահյուսվում են, դառնում մի ամբողջական պատմություն: Հեղինակը ներկայացնում է Արարատ լեռը՝ հնամյա ավանդություններում, պատմում այն արշավախմբերի մասին, ովքեր փորձել են բարձրանալ նրա գագաթը, պատմում լեռան ուսումնասիրության ծրագրերի մասին:

Իսկ հիմնական պատմությունը նրանց մասին է, ովքեր առաջին անգամ բարձրացան Արարատի գագաթ: Նրանց մասին է, ովքեր առաջին անգամ հաղթահարեցին «սրբազան լեռան իրական վտանգները ու երևակայական արգելքները»:

Արարատ բարձրացող արշավախումբը ղեկավարում էր Դորպատի համալսարանի պրոֆեսոր Յոհան Պարրոտը: Նրա հետ էին Էջմիածնի վանքի ներկայացուցիչ և Պարրոտի թարգմանը, երիտասարդ դպիր Խաչատուր Աբովյանը, Ակոռի գյուղի հայ շինականներ, ռուս զինվորներ: Արշավախումբը «... երրորդ փորձից և երկօրյա դժվարին ու տանջալից վերելքից հետո ոտք դրեց Մեծ Մասիի բարձրագույն կատարին»:

Լեռը բարձրանալու նպատակները բազմազան էին. բնական հարստությունների հետազոտումներ, երկրամասի աշխարհագրություն, բուսաբանության, լեռան ֆիզիկական հատկությունների ուսումնասիրություններ և այլն:

Եվ բարձրության հետ մեկտեղ հաղթահարվում էին նաև նախապաշարումները, լեռան անմատչելիության մասին սպառնացումները:

Թե՛ Պարրոտը, թե՛ Աբովյանը, երկար ժամանակ հրապուրված էին Արարատով, որի վրա ըստ ավանդության կանգ է առել Նոյի տապանը: Գիրքը պատմում է նրանց տառապանքների, ցավերի, մտահոգությունների և լեռան «նվաճման» հրճվալից պահերի մասին: Գրքի այդ էջերը, պարունակելով ստույգ փաստեր, վերածվում են գեղեցիկ բընարական պատկերների:

Գիրքը կարդացվում է հետաքրքրությամբ, պարզ և առինքնող է հեղինակի ոճը: Չի փորձում շլացնել կամ ոչ անհրաժեշտ փաստերի կուտակմամբ դժվարացնել ընթերցումը:

Պարրոտին և Աբովյանին իր ժամանակին շատ են սպասավել, նրանց երթը սուտ հայտարարել: Ի վերջո ճշմարտությունը հաղթանակեց: Պսակազարդվեց նրանց սխրանքը: Այս գիրքը տուրք է հարգանքի և սիրո:

ԼԻԼԻԹ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ








# ԻՄ ԾՆՆԴԱՎԱՅՐԸ

**Մեր գյուղը հիմնադրել են Էրզրումից գաղթած տասնըհինգ հայ ընտանիքներ: Նրանք բնակություն են հաստատել այս բլուրների և սարերի միջև թաքնված Դամալայում: «Դամալա» վրացերեն բառ է, որ թարգմանաբար նշանակում է թաքստոց: Գյուղն ունի սառնորակ աղբյուրներ, ընդարձակ դաշտեր, լայնարձակ արոտավայրեր: Գարնանը դաշտերով մեկ տարածվում է ծաղիկների բուրմունքը, առվակների քչքչոցը, թռչունների երգը: Այս ամենը կենդանացնում և ոտքի է հանում գյուղը: Մեր գյուղի նախկին տասնհինգ ընտանիքները բազմացել, այժմ դարձել են յոթ հարյուր ընտանիք: Ես ուր էլ գնամ,**

որտեղ էլ ապրեմ, երբեք չեմ մոռանա իմ հայրենի գյուղը՝ Դամալան:

ՍԻՐԱՆՈՒՅՇ ՊԵՏՐՈՍՅԱՆ
Վրաց. ՍՍՀ, Ասպինձայի շրջ. գ. Դամալա

# ԳԵՂԵՑԻԿ Է ՄԵՐ ԳՅՈՒՂԸ

Երբ հնչեց վերջին զանգը, ափսոսանքով թողեցինք մեր սիրելի դպրոցը: Ես մնացի գյուղում՝ Մարտունիում: Մարտունին գտնվում է Սևանա լճի ափին: Մեր գյուղը ընկած է լեռների միջև: Մեզ մոտ գարունը ուշ է բացվում: Նրա գալու հետ միասին կանաչում է մեր դիմացի սարը, իր աչիկներն է բացում կապույտ ձնծաղիկը: Ամռանը մեզ մոտ շոգ է լինում, և դրա համար ես գնում եմ սար՝ տատիկիս մոտ: Ամբողջ ամառվա ընթացքում մնում եմ այնտեղ: Երբ անձրև է գալիս, վարարում է ձորով անցնող գետը: Անձրևից հետո արևը ժպտում է մեզ. ես երկար կանգնում եմ ու աչքերս կկոցած նայում ծիածանին, որն իրար է միացնում լեռները: (Հետո ես տխրում եմ, ծիածանը շատ շուտ է անհետանում):

Ես այստեղ օգնում եմ տատինիս, ջուր եմ բերում գետից մեր փոքրիկ հորթուկի ու գառնուկի համար: Եղբայրս գյուղից թերթեր ու ամսագրեր է բերում. ես կարդում եմ, իսկ տատիկն ուշադիր լսում է: Երբ մթնում է, գլուխս դնում եմ բարձին ու տատիկիս պատմած հեքիաթները տեսնում երազում:

ԼԱՐԻՍԱ ԱՍՊԱՏՈՒՐՅԱՆ
Մարտունու № 8 միջն. դպրոցի 5-րդ դաս.

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆ անուն,
Դու ութը հնչյուն.
Ութ եղբայրների
Համաստեղություն:

Մեկը լեռ է վեհ,
Մեկը լիճ է յուրթ,
Մեկը գետ է խենթ,
Մեկը ձոր է մութ!

Մեկը երկինք է,
Մեկը՝ վառ արեգ,
Մեկը՝ երգիչ է,
Մեկը՝ արահետ:

Եվ բոլորն այսպես
Զուգված իրար հետ.
Որ ոչ մի քամի,
Ոչ մի թշնամի
Չի կարողացել
Այդ շղթան քանդի:

ՀԱՅԱՍՏԱՆ անուն
Դու լույս ես անհուն,
Որն սկիզբ չունի
Ու չի վերջանում:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

# Համբո-Գիքորի ժամանակները չեն

Լոռեցի ամուսինները իրենց դպրոցական երեխային առած քաղաք են գնում: Քաղաքը էնքան են ոտի տակ տալիս, որ երեխի ոտին ոտնաման չի մնում: Փառք աստծու, հո էն Համբո-Գիքորի թվերը չեն, որ խեղճանան: Համարձակ մտնում են խանութ ու կոշիկ պահանջում:

— Երեխին կոշի՛կ բեր,— ասում է հայրը,— մինն աջ ոտին...

— Մինն էլ ձախ ոտին,— լրացնում է մայրը:

Երեխան էնքան մեծ ոտներ է ունենում, որ խանութպանը զարմանում է.

— Ո՞ր դասարանում ես սովորում:

Երեխան ծպտուն չի հանում, հայրն ասում է.

— Հինգումն է, ի՞նչ կա:

— Ոտը վեցումն է,— լրացնում է մայրը:— Ի՞նչ կա:

— Էն կա, որ...— իր արնին կատակում է խանութպանը:— Հինգերորդ դասարանի երեխան իրավունք չունի էնքան մեծ ոտներ ունենա: Մինչև տասը հասնի, ոտները էլ կհասնեն հիսուն համարին: Ի՞նչ պիտի անեք:

— Հանգիստ եղիր, դու թե կարաս կոշիկի գինն իջեցրու, իսկ երեխի ոտների մասին մտածել ենք:

— Ի՞նչ եք մտածել,— զարմանում է խանութպանը:

— Հենց ութն ավարտի, տանելու ենք պրոֆտեխնիկական ուսումնարան:

# Թան, թան, թանանա...

(ժողովրդական)

Պապի հարսը լավ հարս էր, ամեն գործ ձեռքից գալիս էր, բայց նա ավելի հայտնի էր իր խավիծով ու թանով: Խավիծը՝ իր տղային, իսկ թանը՝ նրա պապի համար: Պապին՝ թան, իսկ նրա թոռանը՝ խավիծ: Թանն էլ բերում է մեծ կավե ճավաթով, հետն էլ խոսք է ասում. «Որ մինչև վերջ չես խմել, ուրեմն թոռանդ չես սիրում»: Ում՝ ում, բայց ո՞վ է տեսել, որ պապը թոռանը չսիրի: Մի օր էլ, երբ հարսն իրեն թան էր տվել, իսկ երեխային՝ խավիծ, քթի տակ սկսեց դնդնալ, ապա չափաբերած երգել.

Խավիծ, խավիծ, խավլավիծ,
Պապը ուտի, ընկնի հալից...
Թա՛ն, թա՛ն, թա՛ն,
Պապը ուտի, գնա գութան...

«Հիմա քեզ հալից էնպես գցեմ, ո՛ր...» — որոշում է հարսն ու սկսում նրան «խավծախեղդ անել»: Պապը չեմուչումով նայում է խավծին, նայում է հարսին, իբր՝ ի՞նչ կլինի, խավիծը տար, իմ սովոր թանը բեր:

Պապն ուտում է խավիծը, իբր անախորժակ, ստիպված: Ուտում է, ուժովանում, զորանում, իր գութանի բանին կենում: Իսկ խորամանկ հարսն անցնում է թանի, որ ինքը զվարթանա: Բայց դատարկ թանով զվարթանա՞լ կլինի:

Ահա թե ինչպես է պարզ, միամիտ ու արդար պապը կարողանում խաբել խորամանկ հարսին: Փորն ընկած, հանգած ձայնով երգում է.

Խավիծ, խավիծ, խավլավիծ,
Պապը ուտի, ընկնի հալից...

Եվ ի՛նչ ուրախ, հնչեղ ձայնով է երգում.

Թա՛ն, թա՛ն, թա՛նանա,
Պապը ուտի, զվարթանա՛,
Թա՛ն, թա՛ն, թա՛ն,
Պապը ուտի, գնա գութան...



## ԺԱՄԱՆՑ




● Երեք եղբայր ձուկ էին որսացել, բայց հոգնած էին, չբաժանեցին: Որոշեցին քնել, առավոտյան վեր կենալ, բաժանել: Այդպես էլ արին: Բայց գիշերվա մի ժամանակ մեծ եղբայրը վեր կացավ ու ձկները բաժանեց երեք հավասար մասի, իր բաժինը թաքցրեց: Մի ձուկ ավելացել էր, այն էլ ջուրը գցեց ու քնեց: Այնուհետև վեր կացավ միջնեկ եղբայրը, եղած ձըկները բաժանեց նորից երեք հավասար մասի, իր բաժինը առանձնացրեց: Նորից մի ձուկ ավելացավ, այն էլ գցեց ջուրը ու քնեց: Վերջում արթնացավ փոքր եղբայրը, եղած ձկները բաժանեց երեք մասի ու նորից մի ձուկ ավելացավ: Ավելացած ձուկը գցեց ջուրը ու գնաց քնելու:

Քանի՞ ձուկ կար մինչև մեծ եղբոր բաժանելը:

● Մի մարդու որդին պառկած է լինում հիվանդանոցի № 6 սենյակում: Սենյակները իրար միջով էին մտնում: Տղան ձմերուկ է ուզում հորից, բայց նա. 1-ից մինչև 6-ը անցնելը, պետք է բերված ձմերուկների կեսը թողներ № 1-ում, կեսը № 2-ում, այսպես մինչև որ մեկ ձմերուկ տանի իր տղային: Հայրը քանի ձմերուկ պետք է տանի հիվանդանոց:

● Մի մարդ անզգույշ կպչում է մի կնոջ, որը պայուսակով ձու էր տանում և կոտրում է այնտեղ եղած ձվերը: Մարդը ուզում է փոխհատուցել ձվերը և ասում է կնոջը, թե քանի՞ ձու կար նրա պայուսակում: Կինը պատասխանում է.

— Քանի՞ ձու կար չգիտեմ, բայց եթե բաժանում էինք 2-ի, 3-ի, 4-ի, 5-ի, 6-ի, մեկ մնացորդ էր մնում, իսկ 7-ի վրա բաժանվում էր առանց մնացորդի: Քանի՞ ձու կար պայուսակում:

Առաջարկը՝ ՎԱՀԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

### «ՊԻՈՆԵՐ» № 10-ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

1. Մինչև բաժանելը զամբյուղում կար 30 խնձոր:
2. Խաչիկը ուներ 1ռ. 40 կ., իսկ Հրաչիկը՝ 3ռ. 40 կ.

2
9 6
1 7
8 4 3 5

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15,
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38,

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015. Ереван-15. ул. Кармир банаки. № 15.





**Մ. ԱՍԼԱՄԱԶՅԱՆ «Հերոսի վերադարձը»**


Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Հանձնված է արտադրության 11.08.1983 թ.։ Ստորագրված է տպագրության 15.11.1983 թ.։ ՎՖ 06991։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16՝ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ, մամ.։ Տպաքանակ՝ 69562։ Պատ. 2157։ Գինը՝ 15 կ.։*

Сдано в набор 11.08. 1983 г. Подписано к печати 15.11 1983 г. Формат 70×100 1/16. ВФ 06991. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 69562. Заказ 2157. Цена 15 коп.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.